1916 № 40.—Հոկտեմբերի 2 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

...ՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

...ՆԵԳԻՆԸ՝ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ. ...ական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների ...ային հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր. Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

...ԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արատարաղեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

...սցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

...ԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ.—ՆԵՐՔԻՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ.— ...րեկամը. Թորգոմի.—Լորդ Բրայս. Արշ. Սաֆրաս...—Ինչ են պահանջում հայերը, Գ. Ենգիբարեանի.— ...ասնու գեկուցումը Մշոյ և Բիթլիսի գաղթականական ... մասին. Հայորդու.—Տխրութեան թերթիկներ (Նամակ ...թեան) Սէյրիի.—ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ.— ...ՆԵՐ.—Պարենաւորման գործը.—ՔՐՈՆԻԿՈՆ.—ՏԱՃԿԱ-...—Հայաստանի ապագան, Թարգմ. Մաժակի.—ԳԵՂԱ-ՐՈՒԵՍՏ.—Մի Սօսի, Ագատ-Վշտունու.—Անյօղ քրքիջներ, Ծ. Թ.-ի.—ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ.—Թշուառութեան ծովը, Բ. Այվազեանի.—ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ.—Մանկանոցի խաղերը, Ք. Ս.-ի.—ԳԻՏԱԿԱՆ.—Խոլերա (շարունակութիւն), Բժ. Բ. Աղասարեանի.—ՊԱՏՄԱԿԱՆ.—Շուշան Իշխանուհի, Սահ. Մովսէսեանի.—ԹԱՏԵՐԱԿԱՆ.—Հայ թատրոն, Արտիստի.—ՆՈՐ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ.—ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ։—



The Right Honble.
VISCOUNT BRYCE, O.M., D.C.L., LL.D.
ՄԵԾԱՆՈՒՆ ՀԱՅԱՍԷՐ ԼՈՐԴ ԲՐԱՅՍ

## Համաշխարհային պատերազմը

### ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատում այս շաբաթ վերսկսուեցին ռազմական գործողութիւնները ծովամերձ շրջանում։ Կարաբուրնու-սուի շրջանում յարձակման դիմելով՝ ռուսները ամսոյս 20-ին Սև ծովի ականակիրների օգնութեամբ դուրս են մղում թշնամուն իրենց դիրքերից։ Յաջորդ օրերը նրանք զարգացնելով իրենց գործողութիւնները գրաւում են Պետրա-Կալէի ամրութիւնները և հասնում մինչև Կարշուտ-դարասի գետի ակունքը։ Ռուսական այս յարձակումն ըստ երևոյթին անակընկալ էր թիւրքերի համար։ Իրենց ամբողջ ոյժը կենտրոնացնելով Երզնկայի և Մուշ-Բիթլիսի գծերի վրայ՝ նրանք աչքաթող էին արել հիւսիսային գծերը, որից և յաջողութեամբ օգտուեցին ռուսները։

Ռազմաճակատի միւս գծերի վրայ աչքի ընկնող գործողութիւններ տեղի չեն ունեցել։ Միայն Բեալքիթ Ջիֆթչիքից արևմուտք և Օգնուտից արևմուտք մի քանի անգամ ուժեղ հետախոյզ խմբերի ընդհարումներ են եղել, որոնց միջոցին ռուսներին յաջողուել է մի քանի կէտում դուրս մղել թիւրքերին իրենց դիրքերից և պատերազմական աւար խլել նրանցից։

Պարսկական ճակատում ընդհանրապէս դրութիւնն անփոփոխ է մնում։ Այս շաբաթ ռուսները մի փոքրիկ յաջողութիւն ունեցան Սպահանից Թեհրան տանող ճանապարհի վրայ։ Նրանք դուրս մղեցին թիւրքերին Բաշան քաղաքից, որ 220 վերստ Թեհրանից հարաւ է գտնւում։

*Միջագետքի և Եգիպտոսի ճակատներում այս շաբաթ միայն սաւառնակների կռիւներ տեղի ունէին։ Անգլիացիք մի քանի կէտերում սաւառնակներից յաջողութեամբ ռմբակոծել են թշնամու դիրքերը։*

### ԱՒՍՏՐՈՒ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*Ռուսական ճակատի հիւսիսային գծերում պատերազմական գործողութիւնները դժուարացել են շնորհիւ աշնանային անձրևներից գոյացած լճերի ու ճահիճների։ Այնուամենայնիւ Ռիգայից արևմուտք երկու կողմի մարտկոցները անընդհատ գործում են, երբեմն հասցնելով իրենց կրակը մրրկային աստիճանի։*

*Հարաւային գծերի վրայ յամառ կռիւներ տեղի ունէին Վլադիմիր-Վոլինսկի ճանապարհից մինչև Դնեստր գետը։ Թշնամին խիստ զօրեղ ամրութիւնների վրայ հսկայական զինուորական ուժեր կենտրոնացնելով յամառութեամբ դիմադրում է ռուսներին՝ նրանց առաջխաղացութիւնը կասեցնելով։ Այս շաբաթ վերջիններս յաջողութիւն են ունեցել Զլաչևսկի ուղղութեամբ՝ գերելով 522 զինուոր և 17 սպայ։ Բրժեզանից հարաւ նոյնպէս ռուսներին յաջողուել է յետ մղել թշնամուն իր առաջաւոր դիրքերից։*

*Անգլօ-Ֆրանսական ճակատում դաշնակիցների առաջխաղացութիւնը Սոմից հիւսիս շարունակւում է։ Այս շաբաթ նրանք Մորալ-Բուշևան գծի վրայ մօտ 1000 մետր առաջ են գնացել, որի ժամանակ գերել են 800 զինուոր և 23 սպայ։ Առանձնապէս ուժեղ կռիւներ տեղի ունեցան Արլենկարի շրջանում, ուր ֆրանսացիք կոտրելով թշնամու յամառ դիմադրութիւնը՝ ներս խուժեցին նրանց խրամատները և 1250-ից աւելի մարդ գերեցին։*

*Իտալական ճակատում լեռնային կռիւներ են տեղի ունենում Կարնեան Ալպերում։ Իտալացիք այստեղ տիրացել են մի քանի կարևոր լեռնահանգոյցների՝ գերելով մօտ 300 մարդ։*

*Ռումանական ճակատում հիւսիսային և հիւսիսարևմտեան գծերում համեմատաբար հանգիստ է։ Դուարդլի մօտ և Ֆոգարաշի-Սազխարի միջև ռումինները այս շաբաթ մի քանի անգամ ջարդ տուին թշնամուն՝ խլելով նրանցից 8 գնդացիր և գերելով մօտ 1000 մարդ։ Սակայն Պետրաշէնի շրջանում նրանք ընդհանրապէս պաշտպանողական դերի մէջ են, իսկ տեղ-տեղ էլ յետ են քաշւում, որովհետև թշնամին այս շրջանում բաւական խոշոր զինուորական ուժեր է կենտրոնացրել։*

### ԲԱԼԿԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*Սալոնիկի ճակատում այս շաբաթ ուժեղ կռիւներ եղան սերբական և անգլիական գծերի վրայ։ Սերբերը ֆրանսացիների և ռուսների աջակցութեամբ Ֆլորինայից հիւսիս պատռեցին բուլղարների երկրորդ շարքի ամրութիւնները, գերելով մօտ 800 բուլղար զինուոր 5 սպայի հետ միասին։ Նրանք այժմ Մոնաստիրի պատերի տակ են գտնւում։ Քաղաքն այժմ ռմբակոծւում է և ամենայն հաւանականութեամբ այս քանի օրս կընկնի դաշնակիցների ձեռքը։ Անգլիական գծի վրայ թշնամին յետ է շպրտուելՍտրումայի ափերից դէպի իր ամրութեանց երկրորդ շարքը։ Իրենց հապճէպ նահանջի ժամանակ բուլղարները ահագին ջարդ են կրել անգլիացիներից։ Կենտրոնի կամ ֆրանսական գծի վրայ այս շաբաթ սովորական թնդանօթաձգութիւն և հետախոյզ խմբերի գործողութիւններ տեղի ունէին։*

*Դօբրուջայի ճակատում ռումինների և ռուսների առաջխաղացութիւնը շարունակւում էր այս շաբաթ։ Ռուսները գրաւել են Կարաբակա և Բէսաուլ գիւղերը՝ գերելով 300 բուլղար և խլելով 6 թնդանօթ, իսկ ռումինները գրաւել են Անչագու գիւղը՝ գերելով 1000 մարդ և խլելով 7 թնդանօթ։ Սակայն Տուրտուկայի և Ռուշչուկի միջև Ռումինների անցնել շարաթ սկսած առաջխաղացութիւնը յաջողութիւն չունեցաւ։ Բուլղարները նրանց յետ են շպրտել Դանուբի ձախ ափը։*

### ԾՈՎԻ ՎՐԱՅ

*Գերմանական սուզանաւերը վերսկսել են իրենց գործունէութիւնները։*

*Այս շաբաթ նրանք խորտակել են 10-ից աւելի նաւ, որոնք մեծ մասամբ չէզոք պետութեանց են պատկանում։*

***

# Ներքին տեսութիւն

## ՄԵԾ ԲԱՐԵԿԱՄԸ

*«Ծառայել Հայաստանին՝ նշանակում է ծառայել քաղաքակրթութեան...»*

ԳԼԱԴՍՏՈՆ

*Այնտեղ հեռու Մեծն Բրիտանիոյ ամպամած և մշուշապատ երկնակամարին ներքև, մի անվեհեր ծերունի է ապրում, սիրտը տարիներ շարունակ բաբախել է Հայաստանի համար։*

*Ժամանակակից գիտական գէնքերով ու զրահներով զինուած, մարդկայնութեան և արդարութեան հաւատամքով ներշնչուած այդ ծերունին Լորդ Բրայսն է, որի պատկերը զետեղել ենք «Համբաւաբեր»ի ներկայ համարում։*

*Նրա անկաշառ հոգին ցաւել ու յուզուել է մեզ համար ամեն անգամ, երբ Հայաստանի ամպամերձ սարերի վրայ չարիք ու բռնութիւնն է թագաւորել. Նրա գեղածիծաղ ու արգաւանդ դաշտերն հեղեղուել են արեան գետերով, երբ կեանքով ու թիռով լիք նրա օջախներն, մտքի ու լոյսի հանդրուան յիշատակարանները կընկահար կործանուել են բարբարոսների ավազակային ձեռքերից...։*

*Նրա մեծ սիրտը բաբախել է նաև այն ժամանակ, երբ ժողովուրդը՝ որպէս Արևելքի հին քաղաքակրթութեան երկրագու քուրմ, լոյսի պայծառ ջահեր է վառել Փոքր Ասիոյ այս խաւար և անթափանց հորիզոնների վրայ և մտքի տաճարներ ուզել՝ Եւրոպական թարմ ու գեղեցկավառ մշակոյթը տուածացնելու և յաւերժելու համար։*

*Ներկայ մղձաւանջի ծանր օրերումն էս, երբ մեր գոյութեան արնաթաւալ ու գետնահար ողջակէզ է բերուել յանուն ազգային ազատութեան, երբ նրա կորուած երակներէն կաթիլ-կաթիլ քամւում է նրա կենսունակութիւնն ու կեանքը, Ալբիոնի մեծ նուն Մարդը, կրկին իր հայրական ու մարդկայնական գործունէութեան լից բաղուկները կարկառում է մեզ։*

*Կարկառում ու ժպտում է մեր երեսին, ցաւում մեր նահատակութեանը համար, բողոքում մեր արդար դատին ի խնդիր մեծարում մեր դարաւոր, անուրանալի բարձր ժառանգութիւնները...։*

*Նա այսօր կատարում է այն վեհ, անշահախնդիր և առնէական առաքելութիւնը, ինչ որ կատարում էր սրանից տարիներ առաջ՝ իր անդրանիկ զինակիցը՝ Գլադստոն։*

*Այդպիսի գնահատելի առաքելութիւն կատարեցին և կատարում են տակաւին Ֆրանսիայում՝ Բրէսանսէներ, Փիէռ-Քիյարներ, Ժօրէսներ, Անաթօլ-Ֆրանսներ... Անգլիայում՝ Գլադստոն, Բրայս, Բեքստոն և ուրիշներ...։*

*Անկաշառ ու անկեղծ զգայնութեամբ լեցուն, բոլոր օտարները հայկական ճնշուած ու մոռացուած ձայնին ունկնդիր նրա տարագիր ու բնաւեր որդիների հեծեծանքներին արձագանքելով, ոչ միայն արդարութեան և մարդկայնութեան իդէալների երկրպագած պիտի լինին, այլև արևելքի այս թանձրախաւար մթնոլորտին մէջ՝ քաղաքակրթութեան լոյսի ճառագայթման պիտի նպաստեն...։*

Ամբողջ հատորներ հազիւ բաւականանան տալու նրա խօսած ճառերը և գրուածները։ Բուցէ շատերի յիշողութեան մէջ դեռ թարմ է վերջին հայկական աղէտի առթիւ, 1915 հոկտ. 6-ին Լորդերի Պալատին մէջ խօսած պատմական ճառը, ուր նա անգերազանցելի պերճախօսութեամբ պարզեց Թիւրքական գազանութիւնները և մի անյեղլի համակրութեամբ արտայայտուեցաւ հայերի ապագայի մասին։ Սակայն իբրև չափանիշ անոր խորին համոզումին կարելի է յիշել այն մի քանի խօսքերը, որով նա վերջացրեց 1914-ի յունուարին Բէյրութի Ամերիկեան համալսարանի հայ ուսանողութեան ուղղած իր ճառը.—«Թոյլ տուէք, պարոններ, իբրև մի անկեղծ բարեկամ ձեզ՝ ասել որ դուք մըտաւորական ռահվիրաներն էք վաղուայ Հայաստանին. կրթեցէք և քաջալերեցէք ձեր ժողովուրդը, ասացէք Սվազի, Բիթլիսի, Ատանայի և Այնթապի ձեր քաջ հայրենակիցներին, ինչպէս նաև Սասունի և Վանի հերոս մարտիկներին, որոնք բարձր են պահել ձեր երկրի պատիւը, ասացէք Զէյթունի աննուաճելի լեռնականներին, այո, ասացէք Հայաստանի ժողովուրդին որ մի փայլուն ապագայ սպասում է նրանց»։

Դա 1914-ի յունուարին էր, ներկայ դժոխային պատերազմից և հայկական աղէտից առաջ, սակայն այդ խորիմաստ գուշակութիւն անող անզուգական Անգլիացին, Լորդ Բրայսը, դեռ ողջ է, և ինչպէս անցեալում, առաւել ևս այժմ ներկայիս, բարձր բռնած Արդարութեան դրօշակը, պայքարում է Անգլիայում, Ամերիկայում և բովանդակ քաղաքակիրթ աշխարհում ի նպաստ Հայաստանի դատին։

Լոնդոն, օգոստոս 22. Արշակ Սաֆրաստեան

---

# Ի՞ՆՉ ԵՆ ՊԱՀԱՆՋՈՒՄ ՀԱՅԵՐԸ

*Վայ էն ազգին, որ աշխարհումս անտէր ա,*
*Վայ էն երկրին, որ թշնամուն գերի ա։*
ԱԲՈՎԵԱՆ

Գ. Ենգիբարեան

---

## ԿԱՐՕ ՍԱՍՈՒՆՈՒ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ ՄՇՈՅ ԵՒ ԲԻԹԼԻՍԻ ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԳՈՐԾԵՐԻ ՄԱՍԻՆ

*Սեպտ. 21-ին Ս. Յարութիւնեանի նախագահութեամբ տեղի ունեցաւ Կենտրոնակ. Կոմիտէի նիստը, ուր Կոմիտէի Մշոյ շրջանի լիազօր պ. Կ. Սասունին կարդաց մի հետաքրքրական զեկուցում այդ շրջանի գաղթ. գործերի մասին, որից քաղում ենք կարևոր մասերը.*

*«Մուշի և Բիթլիսի գրաւումից յետոյ, մարտի սկիզբներին Թիֆլիսում գտնուած մի խումբ մշեցիներ, թւով 130 հոգի՝ ցանկութիւն ունեցան մեկնել երկիր։ Նրանց դիմումին վրայ Կ. Կոմիտէն 5000 ռուբլի յատկացրեց, որպէս ճանապարհի և զգեստեղէնի ծախք։ Մուշում և նրա շրջակայքում խմբաւորուած այդ մշեցի երիտասարդները մեծ աջակցութիւն ցոյց տուին այնտեղ գործող գաղթականական մարմիններին։ Նրանք կատարում էին Թռուցիկ խմբերի պարտականութիւն. հաւաքում էին գաղթականներին քրդական շրջաններից, նոր ազատուողներին պաշարեղէն էին տալիս և առաջնորդում ծայրագաւառներից դէպի Մուշ։ Այդպիսի լուրջ և վերին աստիճանի անձնուրաց պարտականութիւն կատարելիս խմբերը ամբողջ ժամանակաշրջանում ոևէ նիւթական օգնութիւն մարմիններից ստացած չեն, բացի բարոյական աջակցութիւնից, այն է՝ յարաբերութեան մէջ մտնել զինուորական իշխանութեան հետ, փաստաթղթեր ստանալ և զանազան դիւրութիւններ ունենալ երթևեկութեան և տեղափոխութիւնների համար։ Պէտք է ասել, որ խումբը ապրում էր իր անդամների ձեռք բերած հացահատիկներով և աւարներով միայն։ Մշոյ շրջանում գտնուող մեր Կոմիտէի անդամները ոչ մի առնչութիւն չեն ունեցել այդ Թռուցիկ խմբերի նիւթական ներքին վիճակի հետ, Կոմիտէն միայն իր բարոյական ազդեցութիւնն է պահպանել նրանց վրայ և ղեկավարել գործերը։*

*Ազատուած ժողովրդի վիճակը, ինչպէս յայտնի է, շատ աննախանձելի և վատթար դրութեան մէջ էր գտնւում. հաց չըկար, շատերը հիւանդ էին և մեծ մասը մերկ էր։ Կոմիտէն խմբերի աջակցութեամբ ամենից առաջ ձեռնամուխ եղաւ հոգալու սնունդ և հացահատիկ, բայց ցորենի պաշարեղէնը վերջացած լինելով, մենք մատակարարում էինք դըլգըլ։ Այդ ծանր օրերում օրական միջին թւով ազատւում էին 40—60 շունչ՝ Սասունի, Դիարբէքիրի, Հազոյի և Մօտըգանի շրջաններից և որոնց թիւը ռուսական բանակի առաջխաղացութեան հետ զուգընթացաբար աւելանում էր։ Բոլոր ազատուած փախստականները Թռուցիկ խմբերի առաջնորդութեամբ բերւում էին Մուշ և տեղաւորւում նաև շրջակայքը գտնուած գիւղերում։*

*Ժողովրդի բազմանալուն և ընդհակառակն ուտեստեղէնի նուազելուն պատճառով՝ սկսանք դաշտային գիւղատնտեսական աշխատանքների ձեռնարկել. գիւղերում տեղաւորեցինք որոշ թւով փախստականներ, ստեղծեցինք նրանց մէջ ներքին կազմակերպչական դրութիւն, որը պիտի կարգաւորէր վիճակը և հսկէր աշխատանքների վրայ։ Բաժանեցինք գիւղացիներին որոշ թւով եզներ, նաև երկրագործական գործիքներ և այդպիսով շատ տեղերում արդէն գիւղացութիւնը ձեռնարկել էր երկրագործական աշխատանքների։*

*Բայց դժբախտաբար յուլիս 23-ին տեղի ունեցաւ նահանջ, որի պատճառով թէ Սասունի լեռներում և թէ Մշոյ դաշտում գտնուած փախստականները պատրաստուեցին նահանջել և յանկարծակիի գալով թողին շատ կենսական պիտոյքներ և ճամբայ ինկան։ Ժողովուրդը՝ թւով 5000 շունչ՝ ճամբայ ելան դէպի Կովկաս։ Մեր որբանոցներն ու գոյքերը գտնւում էին Մոկունք գիւղը, 4 վերստ հեռու Մուշ քաղաքից։ Որբերի և յետամնաց ժողովուրդի հետ մէկտեղ մեկնեցինք Խնուսի ուղղութեամբ և յուլիսի 26-ին հասանք Խնուսի Արօս գիւղը, ուր գտնւում էր առաջին սննդատու կայանը։ Միայն Յուշտամ գիւղը հեռու լինելու համար ենթարկւում է տաճիկ զօրքերի յարձակման, կռւում են տղամարդիկ և սպանւում են ժողովուրդից 22 հոգի։*

*Խնուսում փախստականների թիւը բարձրացաւ 10,000-ի. մեր տրամադրութեան ներքև գտնուած ուտելեղէնի բոլոր պաշարները բաժանեցինք ժողովուրդին, իսկ պակասորդը գնեցինք ճանապարհի վրայ գտնուող գիւղերի հայ բնակիչներից։*

*Հասնելով Կովկասի սահմաններն մեր աշխատակիցները ժողովուրդին առաջնորդեցին մինչև Ալէքսանդրապոլի դաշտավայրը և նրանց տեղաւորելուց յետոյ վերադարձան Սարդարաբատ, ուր խումբը լուծուեցաւ։*

*Բայց այժմ քանի որ սկսել են վերագրաւուել Մուշի և շրջակայքի երկրամասերը, և այդ առիթով ժողովուրդը սկսել է վերադառնալ և ստացուած վերջին տեղեկութիւնների համաձայն մօտ 5000 հոգի գաղթականներ կան հաւաքուած այդ կողմերում, ուստի՛ բնական է, որ պիտի դարձեալ վերսկսել գործունէութիւնը այդ շրջաններում։*

*Մշոյ և Սասունի շրջաններից ամեն օր նոր գաղթականներ են գալիս և կենտրոնանում Մուշ քաղաքում։ Թռուցիկ խմբերի կարիքը զգացւում է՝ որբերը հաւաքելու և գաղթականներին օգնութիւն հասցնելու համար. բացի այդ մեծ քանակութեամբ հացահատիկ կարելի է ձեռք բերել այդ շրջաններում, եթէ խուզարկութեան գործը կանոնաւոր հիմքերի վրայ դրուի։*

*Կարօ Սասունու զեկուցման կցուած էր նաև Մշոյ և Խնուսի*

շրջաններում գործող Հ. Կ. Կոմիտէի բժիշկ՝ Մանուշակեանի զեկուցումը, փախստականների առողջապահական վիճակի մասին։

Սանիտարական խումբը՝ բաղկացած մի բժշկից, մի հականեխիչից և մի սանիտարից՝ կենտրոնացած էր Խնուսի Արօս գիւղում։ Խումբը այդտեղից բժշկական անհրաժեշտ օգնութիւն էր ցոյց տալիս Մշոյ և Խնուսի շրջակայքում տեղաւորուած փախստականներին։

Հայորդի

ՏԽՐՈՒԹԵԱՆ ԹԵՐԹԻԿՆԵՐ

*(Նամակ խմբագրութեան)*

ԴԻՄՈՒՄ

Ժողովում եմ Հայաստանի և հայութեան այս երկու տարի շարունակուող ողբերգութիւնից դրուագներ։ Դառը փշրանքներ, կսկծող նշխարներ։

Հայաստանի բնիկ վայրերից մինչև Կիլիկիա և Կովկաս, Պոլսից ու Փոքր-Ասիայի խորքերից մինչև Միջագետքի հարթութիւնները, Եփրատի վարար ջրերը և մինչև Լամլումի վայրի ճահիճներն ու Պարսկական հեռաւոր ծոցը՝ սփռուած են հայ տանջանքի սրբազան նշխարներով։

Այդ ի սփիւռս աշխարհի ցիր ու ցան հայ տառապանքից ես կազմելու եմ կենդանի ու իրական պատկերների մի գիրք։ Հազար ձև, հազար գոյն ու եղանակ ունեն այդ պատկերները. մեծ, զարհուրական անցքեր և սուէպ աննկատ ու մանր դիպուածներ, որոնք հաւասար ուժով ներքին դրամա ունեն ու շշմեցնող շանթեր։

Եւ կայ, որ հարազատի սարսող տանջանքից աւելի շշմեցնող է թշնամու ոճրական մեծութիւնը։

Հազար աչքեր տեսել են այդ անցքերը, հազար հոգիներ համակուել են նրանց սարսուռով, որոնք այսօր կան, ապրում են։ Փակում են իրենց աչքերը նրանք, և մեծ-մեծ աշխարհները մի հարթ կտաւի պէս բացւում են նրանց առաջ՝ անթիւ տանջանքի պատկերներով.—

Սերունդների աշխատանքով կանգնեցրած հոյակապ տունն ընկնում է մի կարճ վայրկեանում, ու նրա կողքին խենթացնող վիշտ ունի իր մի որոճի համար չքաւորը։

Աւար է հայ գիւղում ու քաղաքում հրդեհը ճարակում է մնացած բարիքը. ով կարող է կանգ չառնել մի խեղճ խրճիթում մոռացուած կոյր ծերունու վշտի առաջ. կամ չտեսնել զարհուրած ու սովից ճչող շների, կատուների վիճակը։

Որպէս նախիր, բազմութիւնները դուրս են քշւում հայրենական յարկից, և տարածութեան վրայ մնում են դատարկ ու պօռացող գիւղերը։ Միթէ կարելի է չզգալ սպասող արտերի, այգիների վիշտը, կամ անտէր ջրերի լացը.

Հողմավար տերևների պէս բազմութիւնները վարւում են հեռու և չոր ճամբաներով. հանուր նախճիրի մէջ ձագերը ցրիւ ածած մի մօր խենթ որոնումներն են և միւսի երկունքի տանջանքները։ Բայց և ով կըմոռանայ քարուանից պոկուած, ճամբի եզրին մնացած անզօր պառաւին։

Եւ ահա մահուան երախում սատանօր մարտնչումի յուսահատ ճիչեր են բարձրանում. մեծ, հանրային հերոսութիւններ մերթ. ու նաև կորած գիւղերում, անտես բակերի մէջ, շատերը եղեռնական մահ են գտնում՝ հայրենի հողից չպոկուելու համար։

Այդպէս է, որ ջիւանը սրախողխող են անում իր հարսի ու մօր առաջ։ Եւ հարսին բիրտ ձեռները քաշքշում են՝ ջիւանի անել գազազումի ու մօր ցնորող տուայտանքի առաջ։ Պատահեց, որ հարէմներն ու վաճառքի հրապարակները քշուող կոյսերից մէկը դաժան վրէժ լուծեց. իսկ շատերի արցունքն սպառուեց ու թողին իրենց բախտի կամքին։ Կարո՞ղ է ծածուկ մնալ բարբարոսներից յղիացած պարկեշտների ցասումը։ Եղել են, որ շաբաթներ սոված, ամայի լեռներով, թև առած փախել են անարգանքից հեռու կանայք։ Ո՞ր մատեանը կամփոփի այդ բոլորի ցաւն ու հոգին։

Որպէս գրաստի կարաւան, երբեմն հպարտ մարդիկ բեռ կրեցին խոր ձորերի, բարձր լեռների մէջ, ու հազար վերստերի վրայ հազարներով թափուեցին ուժահատ իրենց բեռների տակ։ Հարիւրներով ու հազարներով կառափնավայրեր կան Հայաստանում. հազարներով ու բիւր հազարներով կառափները ջարդուել են կացինների տակ։ Այսքան մեծ, ահռելի գերեզմաններ ո՞ր երկրում կան։ Ջրերի մէջ, ճամբաների վրայ ու գետերի ափին ամենուր անթաղ հազար դիակների պատմութիւններ կան։

Եղել են, որ առանց սարսափի կենդանի՛ ման են եկել մահուան ժանիքների մէջ. ո՞վ արդեօք կարող է իմանալ, թէ ինչ կըլինի այդքան մահ տեսնողների հոգին։ Զարհուրանքից խելագարների պատմութիւնը աշխարհի ամենամեծ գիրքը կըլինի։ Եւ նուրբ մահն ու տանջանքի նուրբ խորքը հնարեցին բանտարկեալների, նրբասունների համար։ Ո՞վ է, որ կարող է տանջելու այս ծարաւի գաղտնիքը բանալ։

Ասում են՝ շատերը զարհուրանքով շուռ տուին երեսները տանջանքի հայրենիքից՝ էլ նրան չնայելու։ Ու ապշեցին, մոռացան, որ մարդ են շատ հազարները, և զէնքը ձեռքին գերեզման փորեցին հարազատների և իրենց համար։ Քանիսն էլ յուսահատ մոլեգնութեան մէջ մեռան մարդու նման։

Բայց մերթ մի քաղցր աստղի պէս թշնամու մարդկանցից սիրոյ, գթութեան գործեր էին կատարւում։ Այդ քաղցր աստղին դարերով կարօտել են բոլոր մեռածներն ու քշուածները։

Հազար-հազարներն էլ մահու երկրից իրենց կեանքը փախցրին օտար երկիրներ, և խաղաղ մահի նոր դաշտեր փռեցին, աղքատութեան տներում հաւաքուեցին ու ստեղծեցին իրենց կեանքից տխուր պատմութիւնների մի անծայր շղթայ։

Մի ուրիշ ձևով բռնի քշեցին նոր հազար-հազարների անտես, անլուր երկիրներ, խաշեցին անապատի արևով, աւազուտները ծածկեցին քայլող կմախքներով և աշխարհը սասանեցին նրանց հոգու ողբերով։

Սրանց բոլորի երեխաները կողովներով ծովն ածեցին, գետերը լցրին, բարբարոսներն իրենց մէջ բաժանեցին ու շատերը վայրենացան ամայի գիւղերում։ Իսկ նրանց եղբայրների ու քոյրերի մատաղ գլուխներում վառուեց վրէժի ու ատելութեան թոյնը։ Եւ եղաւ, որ հզօր մանուկներ ու անկամ հզօրներ մեծ ներում տուին թշնամու հոգուն։

Բայց դեռ մինչև այսօր անմերձ լեռներում, խոր կրծելով դարան են մտել ամենից հումկու հոգիները. նրանք մերթ ցած նետւում ու ծուատում են թշնամուն։ Եւ դարան մտած՝ նրանք անդուլ վերականգնում են հայրենի կործանուած տնակները։ Նրանք ուզում են նորից թագաւորել այդ լեռների վրայ, և բանալ նոր ազատ ճամբաներ՝ աւերակ երկրում։ Եւ բոլոր մեծ պատմութիւնների մէջ սրանց հոգու պատմութիւնն է ամենից մեծը…

Ո՞վ կարող է թուել մեծ զարհուրանքի դէպքերը։ Բայց նրանք բոլորը կենդանի են հազար տեսնողների հոգում։ Կենդանի են վիպական բոլոր մանրամասներով։ Կենդանի են նրանց մէջ ամեն մի դէպքի վայրը և այն անձերի պատկերն ու կեանքը, որոնց հետ պատահել է դէպքը։ Անջինջ կը լինի նրանց հոգում և ժամանակը, և բնութեան ու շրջապատի տեսքը։ Հնարաւոր չէ, որ մոռացուեն դրանք։ Ու յայտնի կը լինեն շատ դժբաղդների ծննդավայրը և անունները։

Մեր կամաւորները, զինուորները, գործիչները, որոնք իրենց պարտքով եղել են Հայաստանում. ամենից աւելի իրանք՝ համակուել մահը տեսած ու հրաշքով ազատուածներն են, որ կը-

րում են իրենց հոգում եղերական պատմութիւնները։ Բայց և նրանք, որ փախստականների. որբերի վիշտն են զուրգուրել, շատ բան տեսած, ճանաչած կըլինեն։ Թուցէ շատ շատերը սրանցից արդէն իսկ ունենան տխրութեան թերթիկներ իրենց տեսածից ու լսածից։

Ձեզ բոլորիդ եմ դիմում, եթէ ունէք ազատ ժամ դրա համար—ճիգ արէք, գրեցէք տխրութեան թերթեր այնպէս, ինչպէս դէպքերը կան ձեր հոգում—կարճ, ամփոփ։ Թող լինեն ցրուած, անկարգ, ինչպէս ցրուած է այսօր ամեն մէկի հոգին։ Թուցէ շատերը կըգրեն ուրիշի պատմածը։

Այդ թերթիկները գրկելով ինձ՝ դուք աւելացրած, խտացրած կը լինէք մեր տանջանքի այն պատկերները, որ ես պիտի գրի առնեմ։ Գիտեմ, որ մահու չափ ծանր է ամեն մի հայի համար՝ գրի առնել իր հարազատների տանջանքը. բայց մենք պիտի հաւաքենք մեր կորովը, ապրենք այդ տանջանքը և հզօրանանք նրա մէջ։ Այդ հզօրութիւնն է, որ տանջանքը մեր երկրում պէտք է անմահացնէ մի նորօղ ու աւելի դիմացկուն կեանքով։

Այդ հաւատքով էլ, հեռու և մօտիկ վայրերից, ես կըսպասեմ տխրութեան թերթիկներ։

Սիրով, յարգանքով

Սէյրի

Յ. Գ. Ցարկացողներին կըվերադարձուեն իրենց թերթիկները նոյնութեամբ։ Հասցէս՝ Баку, редакція «Аревъ»—ինձ. Անշուշտ փափագելի է ճանաչել իմ խնդրին արձագանգ տուողներին։ Ուստի կըխնդրէի դրանց՝ լինել աւելի բարի ու ծանօթացնել ինձ իրենց անձի, պարապմունքի ու բնակութեան տեղի հետ՝ տալով միաժամանակ իրենց մշտական հասցէն։

Նոյն

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Հ. Կ. Կոմիտէն շնորհակալութեամբ ստացել է Ղարաբաղի Եգբ. Օգն. Կոմիտէից 1725 ռ. յօգուտ որբերի. այդ գումարը գոյացել է Ղարաբաղի մի խումբ օրիորդների կազմակերպած գրօսանքից։

* * *

Յօգուտ Կրծանիսի որբանոցին ստացուեց 100 ռ. պ. Արտ. Շահվերդեանի միջոցով։

* * *

Կ. Հ. Բ. Ընկերութիւնը յօգուտ հայ որբանոցների ստացաւ պ. Նիկիտ Գրիգորևիչ Երամովից 25 ռ. հանգուցեալ Ա. Ջալեթեանցի գագաղի վրայ պսակ դնելու փոխարէն։

# ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

## ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

Վան—Օհանջանեանից—

Բաշկալէի գաղթականները իրենց տեղում դեռ ևս չեն հաստատուել. վերադարձի շարունակուելու պատճառաւ հնարաւորութիւն չկայ Բաշկալէում պահեստ կամ շարժական խանութներ բանալու։ Պարսկաստանում հացահատիկներ գնելը չը յաջողուեց, գները սաստիկ թանգացել են. սերմացու ևս հնար չեղաւ գնելու։ Վանի պահեստը լայն չափերով օգնութիւն է հասցնում բնակիչներին՝ հայթայթելով նոյնիսկ սերմացու։ Փոխանակութեամբ հաւաքուած աւելորդ հացահատիկները բաժանում ենք կարօտեալներին։ Երկիրը աւերուած դրութեան մէջ է. հարկաւոր է եռանդուն աշխատանք, ուստի առայժմ իմ այստեղ լինելը անհրաժեշտ է։ Առաջին պատեհութեամբ կը ճանապարհուեմ Պարսկաստան։ Բացել եմ պահեստ Թիմարում, որտեղ կայ բաւական խիտ բնակչութիւն։ Խնդրում եմ կարգադրէք միւս տրանսպորտով ուղարկեն Իգդիրից ալիւր, շաքար և նաւթ։ Այսօր Վանից կը վերադառնան դէպի Իգդիր մեր 10 ֆուրգոնները։

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԳՈՐԾԸ

Վերջին երկու շաբաթուայ ընթացքում առանձին աչքի ընկնող գործունէութիւն ցոյց տուեց պարենաւորման բաժանմունքը։

Կենսամթերքների գները տատանման և թանգութեան պատճառով շատ յուսահատական դրութիւն էր ստեղծուել վերջերս և ալիւր ծախողների կողմից ոեւէ առաջարկութիւն չէր լինում։ Ընկերութեանս հազիւ յաջողւում է ահագին դժուարութիւններից յետոյ՝ մի քանի յաջող գնումներ կատարել ձեռնտու պայմաններով։ Առայժմ 104 վագոն ալիւր և 10 վագոն գարի գնուած է, որոնք շուտով կստացուին Փոթիում։

Զանազան վայրերից տեղեկութիւն էինք ստանում, որ ալիւր և ուրիշ մթերքների խիստ կրիզիս կայ. Նոր-Բայազիդում հացի ֆունտը ծախւում է 14—15 կ.։ Ընկերութեանս յաջողուել է Թիֆլիսում գնել 10 վագոն ալիւր և շտապով ուղարկել այն պահեստներին, ուր ալիւրի պաշարը վերջացել է արդէն։

Ապագայում ստեղծուելիք բարդութիւնները նախատեսելով, բարդութիւններ՝ որոնք կարող են մեծ վնաս հասցնել գաղթականութեան, Ընկերութիւնս Հիւսիսային Կովկասի զանազան քաղաքներ ուղարկեց իւր լիազօր Յ. Գ. Մելքոնեանցին՝ ալիւրի խոշոր գնումներ կատարելու համար։

Անյետաձգելի համարելով Էրզրումում պահեստ բաց անելը՝ Ընկերութիւնս պահեստի կառավարիչ նշանակելով պ. Ս. Գ. Տէր-Յակովբեանին ուղարկեց Էրզրում։ Մթերքները արդէն նախօրօք կարգադրութիւն է արուած Էրզրում ուղարկել, որոնք պահեստի բացուելուն պէս՝ Ընկերութեանս կարգադրութեամբ, տեղումը կըստացուեն։

Խնուսի շրջանի Ընկերութեանս լիազօր Սասունի Կարօն ուղևորուելով Խնուս՝ իր հետ վերցրեց մի խումբ պաշտօնեաներ՝ տեղում բացուելիք պահեստների համար։ Կենսամթերքների վերաբերմամբ կարգադրութիւն է արուած Սարիղամիշի և Իգդիրի պահեստի կառավարիչներին՝ շտապով ուղարկել Խնուսի պահեստի համար մթերքներ։

Գեներալ Թամամշեանի միջամտութեամբ Թիֆլիսի նահանգապետից ստացուած է 8 վագոն ալիւր, որից Աղստաֆա է ուղարկուած 2 վագոն՝ 500-ական պուդ, Դիլիջան և Քարվանսարա 1000 պուդ, Նոր-Բայազիդ, Գանձակ՝ 1 վագոն, Իգդիր՝ 1 վ., Ղարաքիլիսա՝ 2 վ., Երևան՝ 1 վ., Ալէքսանդրապոլ՝ 1 վագոն։

Թիֆլիսից ուղարկուած է Աղստաֆա 1 վագոն ալիւր Նոր-Բայազիդի համար, Ալէքսանդրապոլ՝ 1, Իգդիր՝ 1, Վաղարշապատ, 5, Երևան՝ 1, Սարիղամիշ՝ 1 և Ղամառլու՝ 1 վագոն։

Հիւսիսային Կովկասի զանազան կայարաններից ուղարկուած է Ալէքսանդրապոլ՝ 4 վագոն ալիւր, Իգդիր՝ 3, Վաղարշապատ՝ 3, Ղարաքիլիսա՝ 3, Երևան՝ 7. կարգադրութիւն է արուած այդտեղից Ներքին-Ախտա ուղարկել 2 վագոն և Սարիղամիշ՝ 5 վ.։

Գնուած է գեներալ Թամամշեանի միջամտութեամբ և Երկրագործական մինիստրի թոյլտուութեամբ Բաքւում 10,000 պուդ շաքարաւազ, որը կարգադրուած է ուղարկել հետևեալ վայրերը. Երևան՝ 1 վ., Սարիղամիշ 1, Ալէքսանդրապոլ՝ 1, Ղարաքիլիսա՝ 1, Իգդիր՝ 1, Վաղարշապատ՝ 1 և Թիֆլիս՝ 5 վագոն։

# Ք ր ո ն ի կ ո ն

Սեպտեմբերի 27-ին Առաջնորդարանում կայացած փախստականներին օգնող հայ կազմակերպութիւնների միութեան ժողովում նախագահ է ընտրուած Մխիթար եպիսկոպոսը· իսկ փոխնախագահներ՝ Ս. Յարութիւնեան, Ալ. Սահակեան և Հ. Առաքելեան։

***

Հոկտեմբերի 6-ին Երաժշտական դպրոցի դահլիճում կայանալու է Հայ Գրողների Ընկերութեան ներկայ սեզոնի առաջին երեկոյթը՝ նուիրուած տաճկահայ աքսորական գրողներին։

***

Ներկայ սեզոնին Թիֆլիսի Արտիստական Ընկերութեան թատրոնում խաղալու է հայ դերասանների 2 խումբը, մէկը Հայ Դրամատիքական Ընկերութեան խումբն է՝ ռեժիսորութեամբ Սեւումեանի, իսկ միւս խմբի վարիչներն են՝ տ. Մայսուրեան, պ. պ. Աբէլեան, Զարիֆեան, Ալիխանեան և Յարութիւնեան։

***

Այսօր, ցերեկուայ ժամը $12^{1}/_{2}$-ին, կայանալու է Թիֆլիսի կանանց բարձրագոյն դասընթացների բժշկական ֆակուլտետի հանդիսաւոր բացումը Արտիստական ընկերութեան դահլիճում։

***

Յայտնի գրող Ալ. Ահարոնեանը բոլորովին առողջացել է և վերադարձել Թիֆլիս։ Նա գործօն մասնակցութիւն է ունենալու «Հորիզոն» թերթի խմբագրութեան գործում։

***

Անցեալ կիրակի կայացաւ Զուբալովի ժողովրդական տան Հայկական Դրամատիկ խմբակցութեան տարեկան ընդհանուր ժողովը, որ զբաղուեց հետեւեալ հարցերով. Զեկուցումներ՝ 1) ճիւղերի և սեփական օրգան ունենալու մասին, 2) բեմական դասընթացներ, 3) սիրողների նպաստ—կենսաթոշակային ֆոնդի մասին։

***

Փախստական երեխաների դպրոցական խորհուրդը մշակել է Տատեանեան Կոմիտէի նպաստներով բացուած և բացուելիք դըպրոցների համար դասացուցակ, ծախքերի նախահաշիւ, որոշել է գործածուելիք դասագրքերը և կազմել ուսուցիչների ցանկը, որից դպրոցները կարող են ընտրութիւն անել։ Ենթադրելով որ դպրոցների մեծամասնութիւնը կլինի մի դասարանեան, նախկին թուով աշակերտների թիւը 40, խորհուրդը տարեկան ծախք որոշել է 1200 ռ., որից 600 ռ. ռոճիկ ուսուցչին և 600 ռ. այլ ծախքերի համար։

***

Գաղթ. դպրոցների առթիւ գումարուած Հ. կ. Կոմիտէի ժողովում ընտրուեց դպրոցական առանձին յանձնաժողով՝ փախստական որբերի ապաստարաններին կից դպրոցների գործերը ղեկավարելու համար։ Յանձնաժողովի անդամներն են՝ Ի. Յարութիւնեան, Ս. Արօվեան, Յ. Տէր-Միրաքեան, Վ. Մամուլեան և բժ. Բ. Աղասարեան։

Այդ նիստում որոշուեց էրզրումի որբանոցը Հ. կ. Կոմիտէի ղեկավարութեան տակն առնել, ուր այժմ կայ 100 որբ։

***

Հայ Գրողների Ընկերութեան առաջարկութեան համաձայն, Թիֆլիսում գտնուող թիւրքահայ գրողները ժողով գումարելով մի յանձնախումբ ընտրեցին՝ պատերազմից փաստուած թիւրքահայ գրողների ցուցակը պատրաստելու և Գրողների Ընկերութեան ներկայացնելու համար։

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՊԱԳԱՆ

Թարգ. Մաժակ («Ararat»)

# Գեղարուեստ

## ՄԻ ՍՕՍԻ

Գերեզմանիս վրայ լինի՛ մի սօսի՝
կէս մը դալուկ, կէս մը լալուկ, երերուն.
որ թախծանուշ քրոջ մը պէս ինծ խօսի
հէքեաթներէն՝ վաղամեռիկ օրերուն...

Վրաս սփռէ թող ծամերը հարթ, ասուէ,—
իր նրբենի և գաղաղուն ուսերէն,
գիշեր-ցորեկ թող կամացուկ արտասուէ,
թող պատմէ ինծ տառապանքէն ու սէրէն...

Գերեզմանիս վրայ լինի՛ մի սօսի՝
որ մշտերգէ հոգուս երգերը խանձող.
երբ անցորդի աչքէն արցունք վար հոսի,
կը հոլանայ սիրտըս խամրած և անցօղ...

Չը մոռանա՛ք,
գերեզմանիս վրայ լինի մի սօսի։

Թիֆլիս Ազատ-Վշտունի

---

## ԱՆՅՕԴ ՔՐՔԻՋՆԵՐ

***

Մթնաշաղին մէջէն ուրուական մը կը քալէ, մազերն խառնած խաւարի թուխ ժապաւէններուն։

Լուսնշաղին մէջէն երազ մը կը սահէ, լոյսի ծալ-ծալ թերթիկներուն խառնած իր տրտմաթաթաւ ժպիտները։

—Կա՛յ մէկը, որ իր չորացած ոսկորներուն վրայ, մահուան տատամեալու հպումին ցրտութիւնն զգայ միայն, ինչպէս թխաթեւ չղջիկ մը, որ խաւարի թևերուն փակչելով՝ անոր կուրացած աչքերուն մէջ ածուխի սև փոշիներ կը մաղէ անդադար...։

—Կա՛յ մէկը, որ իր սրտի կարմիր դռնակին վրայ կեանքի ներդաշնակ գեղգեղանքներուն զօրութիւնը զգայ միայն և սպիտակ կարապ մը կոցահարէ իր աչքերուն թարթիչներն երջանկութեան կաթիլներն սուզելով անոնցմէ ներս...։

—Կա՛յ մէկը, որ իր ուղեղին գեղնագոյն բջիջներուն վրայ իմաստութեան բոցավառ կայծերն հրկիզէ միայն և մտքի անյատակ սփինքս մը թաւալէ իր էութեան խորքերը...։

Աստղերը թող համբուրուին իրար հետ, ինչպէս ջուրի կապոյտ շրթունքներն լիզող ճերմակ փրփուրները։ Օձերն թող մռնչեն արեգակէն այրուող քարաժայռերուն ներքև, ինչպէս մրրկահաւը ամպի սևներէն շղթայուած ծովուն վրայ։ Գիշերաթռչունները թող սուզուին մութի կոյր աչքերուն խորք և թախծոտ մեղեդիներ սերմանեն այնտեղ, որովհետև ես պիտի ըսեմ, որ կայ միայն մէկը, որու արեան կարմիր բոցերուն մէջ անտեսանելի Ուրուական մը նստած է, որ անօթի վարազի մը նման կը մռնչէ ու կոռնայ, կը թաւալէ ու կը սողայ...։

Այդ Ուրուականը ամեն տեղ է, ամեն բանի մէջ և ամեն բանի շուրջ։

Ամեն տեղ և ամեն բանի շուրջ...։

***

—Ահա՛ բարեկամս, իմ կուրծքը, որու մէջ օձերը կը մանչեն, ինչպէս կատաղած ջուրերը ջրաղացի երկանաքարերուն ներքեւ։

Եղունգներովդ պատառէ իմ դողդոջուն կուրծքը, հանէ ճանկերովդ իմ փոքրիկ, արիւնաթաթախ սիրտը ու բռնէ բարձր բռունցքիդ մէջ. բռնէ բռունցքիդ մէջ ու թող ես տեսնեմ անոր մահասարսուռ քրքիջները, անոր հեւասպառ ու արիւնածոր գալարումները…։

—Օ՜, մի արտասուիր, բարեկամս, արցունք մի թափեր իմ խեղճ սրտի դառնաշունչ հեծեծանքներուն առջեւ։ Չէ՞ որ իմ դէմքին մկանները կը ժպտին ահա. չէ՞ որ շրթունքներս ուրախ մեղեդիներ կը դաշնակեն օդին մէջ…։

***

Երկինք կին մըն է… երկինք յղի կին մըն է կապոյտ կտաւով առագաստուած։ Ահա՛ անոր ժպտուն ու պչրող աչքեր, որոնց արծաթազօծ թարթիչներէն իջնող արցունքներն աստղերու փոխուած կը պարեն կնոջ հոլանի մարմինին վրայ։

Կը պարեն կնոջ հոլանի մարմինին վրայ և համբոյրներով կը թրջեն անոր աղուոր և թափանցիկ միսը։

Ահա՛ լուսնակն, որ կը սահի, կաթի առատութենէն ուռած հրեղէն ստինքն է ան. նուռի նման կախուած կնոջ մարմարեայ կուրծքին վրայ։ Լուսին երկնքի ճերմակ ստինքն է՝ լոյսի ճաճանչապատ աղբիւրին մէջ լողցած։

Ահա՛ կնոջ թուխ մազերը, որ մթնշաղի նման ցրուած են անհունութեան մէջ։

Ահա՛ ծովը, որ իր հսկայ թեւերը տարածած երկիւղածութեամբ կ'աղօթէ, կ'աղօթէ մեղմիւ՝ կնոջ պայծառ գեղեցկութեանը առջեւ ծունկի իջած, որու ծիծին ուռած պտուկներէն սպիտակ եղեամ մը կ'իջնայ ու կը թրջէ ալիքներու կանաչ աչքերը. ու կնոջ ստինքը ծծող ծովուն կոհակներն չարաճճի մանկան մը պէս կը դողդողան, կը վէտվէտին և ուրախութեամբ գինովցած իրենց փոքրիկ թաթիկներն կը շարժեն չարաճճիօրէն…։

Լուսնակի կաթը կը ծորայ, կը մտառուակէ ծովուն սիրտը, ծովուն մեծ, լայնարձակ սիրտը, որ երկրի ծունկերուն վրայ հսկայ ժամացոյցի մը պէս կը բաբախէ։

Երկինք յղի կին մըն է, կապոյտ շրջազգեստով առագաստուած. լուսին կնոջ ստինքն է՝ կաթնաբոր, ճերմակ պտուկներով. ծովը փոքրիկ, չարաճճի երեխան է, որ շրթունքներն ծիծին հպած կը ծծէ յորդառատ ու անբիծ կաթը, անբիծ, ինչպէս կարապի սպիտակ վիզը։

Ծ. Թ.

# Գրականութիւն

## ԹՇՈՒԱՌՈՒԹԵԱՆ ԾՈՎԸ…

I

Ես տեսայ թշուառութեան ծովը. ահե՜ղ, փրփրուն ծովը… Նա խոր էր, անյատակ և ծանր, ահաւոր հեծկլտոց էր լսւում նրա խոր անդունդից։

Նա հեռու չէր, մեր առաջ. մի քանի քայլ հեռու, մեր մէջ։

Հայոց աշխարհն էր այդ. բազմաչարչար, տանջուած հայ երկիրը։

Արիւն էր հոսում այնտեղ և հայի թափած արիւնով գետերն ու ջրերը կաս-կարմիր էին կտրել, մինչդեռ երկինքը—ջինջ ու կապոյտ եթերը՝ ծխով պատուել։

Սև, ահաւոր ծուխ էր դա…

Հայոց երկիրն էր այրւում, Հայաստանը քարուքանդ լինում… Դարերով ապրող հայ ժողովուրդն էր տանջւում, գալարւում ծանր, ահաւոր գալարումներով։ Նա, որը իբրև քրիստոնէութեան պատուար դարեր շարունակ անվեհեր կուրծքը դէմ տուած Եւրոպան էր փրկում բարբարոսներից ու ժահրոտ վէրքերը կրծքին կրում իբր ծանր խաչը, այժմ օրհասի մէջ ընկած ծանր ծանր հեւում էր ու տնքում և խոր տնքալիս դէպ Եւրոպա նայում և ազատութեան արշալոյս տենչում…

Սակայն արշալոյսը չէր բացւում, խաւարն էր տիրում և սև ու մռայլ մութը պատում չորս կողմ։

II

Այո, ես տեսայ նրան…

Ես տեսայ թշուառութեան ծովը։

Հայի կաթիլ կաթիլ արիւնից էր կազմուած դա, ցաւատանջ սրտի հառաչանքներից, սրտամորմոք հեծկլտանքներից, աղեկէզ դառն արցունքներից…

Ծովը մեզ մօտ էր, այստեղ, մեր քթի տակ։

Մենք տեսնում ենք նրան, նրա արիւնոտ լեռ ալիքները դիտում ու սառն, անտարբեր հայեացքներս նրանից դարձնում։

Բայց ծովը ուռչում է, փքւում, շրինդ արձակում ու մեր սրտերին բաղխում…

Ծո՜վը… մեր եղբայրների և քոյրերի ծովը…

Զուլումի զոհերը, արհաւիրքից քշուածները…

Նրանք տանջանքի բովից են անցել, սրի ու հրի միջից փախել ու մեզ հասել։

Գալիս են դրանք, գալիս անհատնում, անվերջ, շարան-շարան ու դրանց վերջը չի երևում…

Ծով թշուառութիւնն է դրանց քշողը, թշնամու գոռ բարբարոսութիւնը նրանց հալածողը ու նրանք թողած իրենց վաթանն ու տունը, անդն ու անդաստանը ու սիրելիների սրախողխող դիակները՝ վազում են, փախչում շնչասպառ, մերկ ու քաղցած, հիւծուած ու անկար, մեր ոտքերը փարում, աղաչում, խնդրում ու լալկան ձայնով կանչում. «հա՜ց, ապրեցրէք մեզ»…

Ես տեսնում եմ դրանց։

Թշուառութեան ծո՜վն է դա, որ մեզ է հասել, թիւրքական բարբարոսութեան ողջագէզը, որ մեր դուռն է բաղխում։

III

Ես տեսայ նրանց…

Տեսայ և սարսափեցի։

Մայրեր էին նրանք, որոնց աչքերը վշտից ու ցաւից խոր ակնակապիճների մէջ էին ընկել ու ծանր բեռան տակ հալ ու մաշ եղել։ Նրանց բեռը ծանր էր, երեք-չորս մանուկներ, բոլորն էլ կայտառ, գանգուր մազերով, սիրուն աչքերով, բայց բոլորն էլ մերկ, բոկոտն, քաղցած ու ծարաւ…

«Հա՜ց, հա՜ց» թոթովում էին մանուկները և մօրը փաթաթւում, իսկ մայրը արտասուաթոր աչքերով մեզ է նայում և ամօթխածութիւնից կաս-կարմիր կտրած ձեռքը դէպի մեզ մեկնում…

Իսկ մի քիչ առաջ նա այդպէս չէր…

Նրա օջախն էր լի, տունն ու տեղը շէն, մառանները գինով լեցուն, շտեմարանները՝ հացով ու պանրով, մարագները՝ կաթն ու մածունով, իւղով ու կարագով, անուշ մեղրով…

IV

Թշուառութեան ծո՜վն է հասել…

Հողը տնքում է, մեռելները շարժւում, քարերը ձայն տալիս…

Արցունքի հեղեղն է թրջում մեր ոտքերը. հեծկլտանքի ահաւոր, մահամերձ ձայները զարկւում մեր ականջներին և իւր սոսկումի երգը երգում…

Հայ ժողովուրդն է դա, որ ուզում են միացնել, մեր հա-

րազատներն են, որոնք իբրև քրիստոնէութեան նախաղ, մեզ են նայում ու մեզանից փրկութիւն խնդրում…

Այո, ես տեսայ մանուկների ահաբեկուած աչքերը, մայրերի զարհուրանքով լի դէմքերը, ծերերի վշտոտ, անհուն տրտմութեամբ լի նայուածքները…

Դա ծովն էր, թշուառութեան ծովը…

Հայոց աշխարհը… կոտորուող և մորթուող հայ ժողովուրդը…

Բ. Այվազեան

Թիֆլիս

---

## ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ

### ՄԱՆԿԱՆՈՑԻ ԽԱՂԵՐԸ

Գեղարուեստական կրթութիւն որոնել մանկանոցում, ասում է Կոնրադ Լանգէն*), շատերին տարօրինակ կը թուայ.—Ինչ գործ ունի մանուկը գեղարուեստի հետ, կը հարցնեն ամեն կողմից։ Այդպիսիներին կը պատասխանեմ—մանուկի ամբողջ կեանքը կազմուած է գեղարուեստական անընդհատ գործողութիւնից։ Ինչքան էլ սա տարօրինակ երևայ, սակայն զուտ ճշմարտութիւն է։ Ընթերցողին ըմբռնելի անելու համար հարկաւոր է միայն պատմել մանուկի գործունէութեան էութիւնը։

Դպրոցական հասակից առաջ մանուկի գործունէութիւնը, բաց առած նրա ուտելը, խմելը և քնելը, ունի 3 ճիւղ, 1. խաղալ, 2. պատկերազարդ գրքեր դիտել և 3. ձեռներով զբաղուել, բան շինել։

Վաղուց յայտնի է, որ մանկական խաղը սկիզբն է ամեն մի գեղարուեստի։ Առանց մանկական խաղերի բացատրութեան դժուար կը լինի գեղարուեստական ստեղծագործութեան վերջին հիմունքները լուսաբանել։ Գեղարուեստը նոյն է չափահասի համար, ինչոր խաղը մանուկի։

Անշուշտ իւրաքանչիւր խաղը գեղարուեստի բնաւորութիւն չունի։ Խաղերը լինում են 4 տեսակ. 1. շարժական, 2. զգայարանական, 3. գեղարուեստական և 4. մտածողական։ Առաջինի և վերջինի վրայ երկար կանգ չենք առնիլ։ Շարժական կամ շարժուն խաղերի՝ վազելու, ոստնելու, պարելու, մենամարտելու, քար կամ այլ բան շպրտելու նպատակն է մարմինն ամրապնդել, մկաններն ու թոքերը եռանդուն գործունէութեան մէջ գցել։ Նրանք գրաւիչ են, որովհետև կենսական ոյժը բարձրացնում են։

Մտածողական խնդիրը, ինչպէս տամա, շախմատ, թղթախաղ և այլն գեղարուեստի հետ իսկապէս ոչ մի առնչութիւն չունեն։ Փոքր ինչ կարելի է բարձր դասել գեղարուեստական տեսակէտից զգայարանական խաղերը։ Զգայարանական պարզ խաղ է, երբ մանկան օրօրոցի վրայից գոյնզգոյն գնդակ են կախում և ճռճռանակի պէս շարժում կամ թողում, որ երեխան ինքը թաթիկներով շարժի։ Այդ զբաղմունքի գրաւչութիւնն այն է, որ համահաւասար գրգիռ է առաջ գալիս տեսանելիքի մէջ։ Իսկ երբ մանուկի ձեռը չխչխկան են տալիս—դա արդէն լսելիքի գրգիռ է։ Զգայարանական խաղերի ամենաբարձր աստիճանը՝ լսողութեան գաւառում թմրուկն ու փողն են, տեսողութեան գաւառում փայլուն առարկաների կամ զարդերի հետ խաղալը, կալէյդոսկոպի միջով նայելը։ Այս բաները մեծ կարևորութիւն ունեն մանուկի գեղարուեստական կրթութեան համար։ Նրա ուշադրութիւնը սրում են, զգացողութիւնն ու ինքնամփոփումն ուժեղացնում։ Ֆրէօբելն խաղալիքների շարքում կախ արած գնդակին կարևոր տեղ է տուել։ Իրա փոքր կառքի մէջ պարկած մանուկը շատ առիթներ ունի տեսա-

*) «Kunst. Erz. des deutschen jugend» գրքի հեղինակը, որից օգտուել ենք այս յօդուածը կազմելիս։ Բ. Ա.

ղութիւնն ընդլայնելու, ինքնամփոփման ունակութիւնը զարգացնելու։ Նրան շրջապատող իրերը, ծնողների, քոյրերի, եղբայրների պատկերները, անվերջ տպաւորութիւնների շարանը մեծ պաշար են նրա համար։

Չը պիտի մոռանալ Հերբարդի զարմանալի գաղափարը. նա առաջարկում էր՝ օրօրոցից մինչև պատը մի բան ամրացնել ու նրա վրայ փոփոխակի զանազան առարկաներ դնել—ձու, նարինջ, ծաղկեփունջ, թէյաման, բաժակներ, թղթէ տուփեր, ժամացոյցներ են, կամ կիսարձան դնել նրա աչքերի առջև, որ ուշադրութիւնը ձևի և զգայարանքը գեղեցկութեան օգտին արթնանայ ու սրուի։ Կամ թէ չէ պատին կախել ու է տախտակ, վրան ցցել դեղին պղնձէ 3 բևեռներ ու շուտ շուտ տեղները փոփոխել մանուկին տարածութեան վերաբերմամբ հասկացողութիւն տալու համար։

Բոլորովին այլ են գ ե ղ ա ր ու ե ս տ ա կ ա ն խ ա ղ ե ր ը. Նրանք միւս խաղերից զանազանւում են մտապատրանքի մոմենտի միջոցով։ Գեղարուեստական ինքնախաբէութիւնը նրա էական յատկանիշն է։ Ոչինչ այնպէս մեծ դեր չի խաղում մտաւոր կեանքի մէջ, ինչպէս ինքնախաբէութիւնը։ Ամենաաննշմարելի առարկան կարող է այն առաջ բերել։ Ֆրէօբէլը երբ գնդակը, հոլը և խորանարդը որոշում էր իբրև դիտողութեան ձևեր, ամենևին աչքի առաջ չունէր այդ մարմինների մաթեմատիկական յատկութիւնները։ Նա բնորոշ շեշտում էր, որ այդ իրերի գրաւչութիւնը կայանում է երևակայական խաղի մէջ, որովհետև մանուկը գնդակը ընդունում է կատուի, մկան, թռչունի տեղ, խորանարդը. սեղանի, նստարանի, աթոռի, արկղի, տան, հնոցի տեղ։ Իսկապէս զարմանալի երևոյթ է, թէ ինչ հեշտութեամբ մանուկներն այդ տեսակ մտապատրանքի անձնատուր են լինում։ Մի չնչին շարժառիթ, և ահա նրանք իսկոյն իրանց երևակայում են որոշ հանգամանքների, շրջապատողների ու գործողութիւնների մէջ։ Այն մանուկը, որ հօր ծնկան վրայ նստած կարծում է թէ բարձր նժոյգի վրայ է հեծած, կամ յատակի վրայ չորեքթաթ անելով շան պէս հաջում է, կամ աթոռի վրայ ոտները մեկնած նստելով իրան կառապան է երևակայում, նա աւելի մեծ գեղագէտ է, քան թէ չափահասը, որ թատրոնում բազմած անձնատուր է լինում մի դրամատիկ մտապատրանքի։ Մանուկն իրա մէջ միացնում է գեղագէտին ու հասարակութեան։ Նա ոչ միայն վայելում է գեղարուեստական երկը, այլ միևնոյն ժամին ստեղծագործում է։

Չափազանց հետաքրքիր է մանկական խաղի նմանութիւնը գեղարուեստական գործունէութեան հետ։ Սա ցոյց է տալիս, որ մանուկն ու գեղագէտը հոգով ազգականներ են։ Մեծ գեղագէտները մեծ մանուկներ են։ Նրանք այլ մարդկանից աւելի անկեղծ ու բացսիրտ են, որչափ մանուկի պէս են զգում, այնչափ աւելի միամիտ են ու անկեղծ։ «Եղէք ինչպէս մանուկներ», սա այն ոսկէ պատուէրն է, որ ամեն ճիւղի արուեստագէտին կարելի էր առաջարկել։

Մանուկի գեղարուեստական խաղերը գլխաւորապէս դրամատիկ տեսակի են։ Այնպիսի գործողութիւններ են, որոնցով գեղարուեստօրէն ընդունում է ուրիշի կեանքի վիճակը, որ կարծել է տալիս, թէ բնածին յատկութիւն ունի կամ շատ փոքրուց զարգացել է նմանողութեան շարքը։ Մանուկը երևակայելով սուզւում է ծնողների կամ այլ անձանց զգացմունքի մէջ, նա անում է կերպն ու աւաշը ծանօթ ընտանի կենդանիների և անշունչ առարկաների։ Նա կամենում է այնպէս ձի հեծնել, ինչպէս ուրիշներին է տեսել, ուստի հօր ծունկը կամ գաւազանը բռնացնում է ձիու տեղ։ Նա շան առաջն առնելու համար աշխատում է նրա նման հաչել։ Խրխնջում է այնպէս, ինչպէս լսել է ձիու խրխնջալը։ Նա գուրգուրում է քրոջն ու եղբօրն այնպէս, ինչպէս ծնողները գուրգուրել են իրան։

Դրամատիկ խաղերի բարձր աստիճանները նկատելի են աղջիկների մօտ, երբ տիկնիկ են վեր թողում, իրանց զուգած սենեակում կնունք, հարսանիք, հրաւէրք են խաղում, իսկ տղե

րանց մօտ այն ժամանակ, երբ խանութ են սարքում, կամ զինուոր խաղացնում կամ գող բռնում։ Տղաների մօտ առհասարակ գեղարուեստական խաղերը շաղկապուած են շարժուն խաղերի հետ։ Զրնայած այդ հանգամանքին, նրանք մնում են գեղարուեստական խաղեր, որովհետև նրանց էական յատկանիշը գեղարուեստական մտապատրանքն է։

Դրամատիկ շատ խաղեր պահանջում են որոշ առարկաներ, որ նրանց հետ մտապատրանքը յարաբերութեան մէջ մտնի։ Սրկզբում դրանք կարող են լինել մանկանոցի կարասիները—սեղան, աթոռ, նստարան, թոփկ (քաշլիկ աթոռ)—որոնք կարող են ծառայել իբրև խաղալիքներ։ Սեղանը ներկայացնում է մի տուն, աթոռը մի կառք, նստարանը մի երկաթուղու գնացք, թոփկը մի շուն։ Կարելի է զարմանալ մանուկի երևակայութեան կայտառութեան վրայ։ Ոչ ոք չի կարող ասել, թէ մտապատրանքները չնչին կըլինին, քանի որ խաղալիքի նիւթ ծառայող իրերը երևակայած պատկերների նման չեն։ Ընդհակառակը այս թերութիւնները մանուկը չի նշմարում. Նրա կենդանի ուշադրութիւնը ընդհանուր կողմի վրայ է։

Մտապատրանքի խաղը դադար չունի նրա մօտ. մանուկը բնութեան մէջ ձևերը մտառութեամբ դիտելով փափաքում է պ լ ա ս տ ի կ խաղալիք ունենալ, որ բնութեան համեմատ շինած լինի։ Դրանով մանկական տեսողութեան շրջանի մէջ մտնում է մի նոր գեղարուեստ—պլաստիկան, թանձրացեալ ձևը։ Դրամատիկ խաղերն ընդարձակւում, դառնում են միևնոյն ժամանակ պլաստիկ։

Մանուկների խաղալիքների մեծ մասը պլաստիկ բնոյթ ունեն, օրինակ տիկնիկը, կապարէ զինուորները, տները, ծառերը, փայտէ կամ թղթէ կենդանիքը։ Այս խաղալիքները պլաստիկ գեղարուեստական գործերի պէս բնութեան նմանողութիւններ են։ Առաջինները երկրորդներից տարբերւում են միայն իրանց չափով և գեղարուեստական չնչին արժանիքով։ Նրանց էութիւնը նրա մէջն է, որ մանուկին ներկայացնեն որոշ, ծանօթ առարկաներ ու նրանց օգնութեամբ շուտ մտապատրանքի մէջ գցեն։

Տիկնիկը մանկավարժական բարձր արժանիք ունի, որովհետև մարդու պատճէնն է։ Նրա մէջ մանուկը տեսնում է հօրը, մօրը, եղբօրը, քրոջը, աղախնուն, բարեկամներին, ծանօթներին, վերջապէս իրան։ Նա իրան երևակայում է մօր դերում և տիկնիկին նայում է ինչպէս իրա զաւակին։ Նրան հագցնում է, շորահան անում, գլուխը սանրում է, երեսը լուանում, անկողնի մէջ պառկեցնում, նորից վերցնում, կերակրում, ման ածում ոտով կամ կառքի մէջ դրած։ Կարճ ասած՝ դրամատիկ խաղը, որ սկզբում միայն իրա վրայ կամ եղբօր, քրոջ, խաղընկերների վրայ էր գործադրում, վերջն անցնում է անշունչ առարկաների վրայ նըմանելով բնութեան։ Այս էական քայլը ցոյց է տալիս, որ նա հասկանում է գեղարուեստը։

Բնական է, որ պլաստիկ խաղալիքները ներկայացնեն մեծ մասամբ ծանօթ շրջաններ։ Ընտանի կենդանիներից ամենաշատ իրացնում են ձին, շունը, կովը, կատուն, ոչխարը։ Հազուագիւտ կամ օտար կենդանիները բաւականութեան փոխարէն տհաճութիւն են պատճառում։

Պլաստիկ խաղալիքներից ստացած մանուկի հաճոյքը բոլորովին նման է նրան, ինչ որ չափահասը զգում է մի պլաստիկ գեղարուեստական գործ դիտելիս։ Սակայն այն մտապատրանքը, որի մէջ մանուկը սուզւում է դիտելիս, հաւանօրէն աւելի կենդանի է։ Այդ է պատճառը, որ պլաստիկ խաղալիքը մանուկը միշտ գործադրում է դրամատիկ մաքով ու ձևով։ Մանուկի աչքում անշարժ, սոսկ անելու նպատակով զարդած խաղալիք գոյութիւն չունի։ Նրա կարծիքով այն է խաղալիքը, որը շօշափում են մատներով ու քաշելով շարժում են տեղից։ Տիկնիկն անպայման պիտի ճուայ, աղաղակի, ոչխարը պիտի գլուխը կախ գցած մայի։ Երբ այդպէս չեն սարքած, մանուկն ինքն է սկսում նրանց ձևով գրել, գլորել, քաշքշել, որ ցանկացած շարժումներն առաջ բերի։ Մանուկի մօտ դրամատիկ ու պլաստիկ գեղարուեստների վայելքը իրարից հատու կերպով չեն ազատուած։ Գեղարուեստական դրամատիկ խաղը նրա աչքում պլաստիկ է, պլաստիկը միևնոյն ժամանակ դրամատիկ։

Գեղարուեստական խաղերին որոշ չափով պատկանում է նաև հէքեաթը։ Այդտեղ էլ գեղարուեստական մտապատրանքը մեծ դեր է խաղում. երևակայութիւնը զբաղւում է ամենաաշխոյժ կերպով։ Հէքեաթի միջոցով մանուկն օտար աշխարհ է փոխադրւում և այնտեղ մնում գեղարուեստական պատրանքի շնորհով։ Նա իրան նոյնացնում է հէքեաթի հերոսի կամ հերոսուհու հետ։ Նրա մտապատրանքն այնքան կենդանի է, որ ինչ հերոսը գործում կամ անում է, կարծում է թէ ինքն է։

Հէքեաթն ու զրոյցը, ինչպէս դրամատիկ խաղերն ու պլաստիկ խաղալիքը, գեղարուեստական հաճոյքի նախաստիճաններն են. վերջին երկուսը տալիս են թատերական գեղարուեստի ու պլաստիկայի հասկացողութիւնը, այն ինչ առաջին երկուսը նախապատրաստում են հասկանալու դիւցազներգութեան, վիպասանութեան և նորավէպի ճաշակը։ Եթէ պատմութիւնը, ինչպէս կանոնը պահանջում է, խաղերին չի կցուած, դրա պատճառը այն է, որ մանուկը դրա մէջ գործող դեր չի կատարելու։ Զրոյցը—պատմութիւնը իրա ներքին էութիւնով պատկանում է գեղարուեստական խաղերին։

Բ. Ս.

(Շարունակելի)

# Գիտական

## ԽՈԼԵՐԱ (Холера) *)

Խոլերան վաղուց ի վեր գոյութիւն ունի Հնդկաստանում Ղանգ գետի բերանի մօտերքում, ասել է թէ այնտեղ նա ունի էնդեմիական բնութիւն (դեղաճարակ)։

Բայց միւս տեղերում խոլերան էպիդեմիական բնոյթ է ստանում և համարւում է ն ո ր ա մ ո ւ տ (заносная), որը մէկ քանի ժամանակից յետոյ անյետանում է։

Խոլերան անցեալ XIX դարի սկզբից սկսել է տարածուել զանազան երկիրներում, ստանալով համաճարակային բնաւորութիւն։ Առաջին эпидемія համաճարակը տևել է 1817—1823։

Ե ր կ ր ո ր դ հ ա մ ա ճ ա ր ա կ՝ 1926—37 և դա աւելի կործանարար է եղել Եւրոպայի համար։

Երրորդ համաճարակ՝ 1846—1863։

Չորրորդը՝ 1863—1875։

Հինգերորդը՝ 1883-ին

Վերջապէս՝ 1890 թ., իսկ 1892 խոլերան երևաց ի միջի այլոց և Կովկասում։ Եւրոպայում երևացին փոքր պայթումներ (вспышки), իսկ Ռուսաստանում աւելի մեծ, այնպէս որ 1892—1895 թուին վախճանուեցին մօտ 800,000 մարդիկ։

### Ա ԽՈԼԵՐԻ ՊԱՏՃԱՌՆ ԵՒ ՏԱՐԱԾՈՒՄԸ

Խոլերի տարածումը լինում է հաղորդակցութեան միջոցաւ իւր բուն տեղից. երբէք նա չի ծագում ուրիշ տեղերում ինքնաբերաբար—самостоятельно.

Գլխաւոր տարածողները հիւանդներն են, որոնք իրենց կղկղանքով ցանում են խոլերի բացիլները։ Նրանք տարածւում են և հագուստի, սպիտակեղէնի միջոցաւ և այլն։

Խոլերի բուն պատճառը գտել է հռչակաւոր Կոխը 1883

*) Տես «Համբաւաբեր» № 39։

թուին։ Դա մի ստորակէտի նման բացիլ է և շատ բարակ մէկ պոչիկով, որի օգնութեամբ արագ շարժւում է. այդ պատճառով նրան կոչում են և վ ի բ ր ի ո ն շ ա ր ժ ո ւ ն։ Կղկղանքի մէկ կաթիլի մէջ լինում են մէկ քանի միլիոններ այդ բացիլներից։

Հռչակաւոր առողջաբաններ Պետտենկոֆէր և Էմմերիխ՝ իրանց վրայ փորձել են այդ բացիլները, ներս ընդունելով մեծ քանակութեամբ, բայց չեն հիւանդացել. երևացել է՝ ճշմարիտ է՝ լուծմունք, բայց ոչ խոլերա։

Վերջերս՝ 1872—15 համաճարակից յետոյ ապացուցուել է, որ գլխաւոր խոլերի տարածումը ջրի միջոցով է լինում։ Այդ՝ մանաւանդ ապացուցել է՝ Կոխը Հնդկաստանում 1884-ին, երբ գտել է բացիլներ Հնդկական մի լճում, որի ջրից օգտուողները հիւանդացել էին խոլերայով։

Բայց Համբուրգի համաճարակը 1892 թուին՝ աւելի ևս ապացուցեց ջրի մեծ նշանակութիւնը խոլերայի տարածման մէջ։

Յայտնուեց, որ այն լճից, ուր կային խոլերի վիբրիոններ— օգտուողների մէջ հիւանդացում և մահացութիւնը սաստիկ էր, իսկ միւս ջրանցքը որը ազատ էր յիշեալ միկրոբներից—Ալտօն քաղաքամասին ջուր մատակարարող—շատ սակաւ դէպքեր տուեց խոլերայի, որովհետև վերջին ջրանցքը անջատուած էր Համբուրգի ջրանցքից։

Պէտք ասել, որ երկու քաղաքամասերը իրանց խմելու ջուրը վերցնում են Էլբա գետից, որի ընթացքը դէպի ծովը դժուարանում է ծովային հոսանքով (морской прилывъ)։

Խոլերի ծագումը վերագրում էին ծովային բանուորներին, որոնց մէջ Ռուսաստանից կային եկողներ։

## III ԽՈԼԵՐԻ ԱԽՏԱՆՇԱՆՆԵՐԸ

Խոլերան ունի իւր մշտական էնդիմիկ շրջանը Հնդկաստանում, ուր նա գտնում է բարեյաջող պայմաններ իր վիբրիոնի աճման համար։

Եւ այդտեղ միշտ ազգաբնակութիւնը տուժում է խոլերայից։ Իսկ երբ խոլերան ստանում է աւելի մեծ ուժգնութիւն և թունաւորիչ բնոյթ, այն ժամանակ նա անցնում է սահմանը և տարածւում ուրիշ երկիրներ, ստանալով համաճարակային բնաւորութիւն։ Խոլերայի գլխաւոր ախտանշանները նախ և առաջ ս տ ա մ ո ք ս-ա ղ ի ք ա յ ի ն ս ո ւ ր տ ա պ ն (կատար) է, որը արտայայտւում է՝ փ ո ր լ ո ւ ծ ո ւ մ - փ ս խ ա մ ո վ, մ ա ր մ ն ի ս ա ռ չ ե լ ո վ (охлажд.) և ս ր ո ւ ն ք ի մկանների ջղաձգութեամբ (судороги) և այլն։

Խոլերան՝ ինչպէս նաև միւս վարակիչ հիւանդութիւնները, ունի յետագայ տեսակները՝ թ ե թ և, մ ի ջ ա կ, ս ա ս տ ի կ և կ ա յ ծ ա կ ա ն մ ա ն։

Ա ռ ա ջ ի ն տ ե ս ա կ ը յաճախ ոտի վրայ է անցնում, փսխում, լուծմունք շատ թեթև։

Ե ր կ ր ո ր դ ը, որը կոչւում է խ ո լ ե ր ի ն ա, արտայայտւում է սաստիկ փսխումով, փորլուծութեամբ, կղկղանքը լինում է հեղուկային, նմանում է բրնձաջրի—հալիմի. լինում են և մկանների ցնցումներ և մարմնոյ ցրտացում։

Ե ր ր ո ր դ ը՝ կոչւում է Ա ս ֆ ե կ տ ի կ—շ ն չ ա ր գ ե լ ա կ ա ն, աւելի ծանր կերպարանք է ստանում. բացի վերոյիշեալ նշաններից երևում են մէզի ընդհատում, զառանցանք, կատարեալ անզգայութիւն, տաքութիւն և այլն։

Խոլերայով հիւանդացողների սրտի գործունէութիւնը շատ շուտով սաստիկ թուլանում է. շնչերակի զարկը (պուլսը) լինում է շատ արագ և թոյլ—թելանման нитевидный). Մարմինը սառչում է, շնչառութիւնը դժուարանում և հիւանդը վախճանւում է՝ յաճախ՝ կատարեալ գիտակցութեան մէջ։

Չորրորդ տեսակը կոչւում է կայծակահար (молнеоносный), որը հարուածում է հիւանդին կարճ ժամանակում առանց խոլերի յատկանշանների՝ լուծի, փսխումի և այլն։ Եւ այդ բացատրւում է սաստիկ թունաւորմամբ խոլերի թոյներով։

Մ ա հ ա ց ո ւ թ ի ւ ն ը խ ո լ ե ր ա յ ի՝ միջին թւով հասնում է $50^{0}/_{0}$։

## IV ԵՒՐՈՊԱԿԱՆ ԽՈԼԵՐԱ

Բացի ի ս կ ա կ ա ն խ ո լ ե ր ա յ ի ց, որը կոչւում է Ասիական, կայ աւելի թեթև տեսակը, որը կոչւում է Ե ւ ր ո պ ա կ ա ն Cholera nostras—մ ե ր խ ո լ ե ր ա յ։ Դա լինում է ամառները թէ մեծերի, թէ փոքրերի, բայց գլխաւորապէս՝ երեխաների մօտ։ Հիւանդութեան պատճառը այլ միկրոբ է համարւում—Bacillus entereditis—աղիքների բացիլներ։

Այդ հիւանդութիւնը շատ վտանգաւոր է մինչև 2 տարեկան հասակ ունեցող երեխաների համար, որոնցից շատերը վախճանւում են այդ երեխայոց խոլերայ կոչուող հիւանդութիւնից։ Մահացութիւնը շատ մեծ է լինում։

## V ԻՍԿԱԿԱՆ ՊԱՏՃԱՌԸ ԽՈԼԵՐԱՅԻ ՏԱՐԱԾՄԱՆ

Այդ հարցը մինչև այժմ վերջնական բացատրութիւն չի ստացել։ Կան մէկ քանի տեսութիւններ (теорія)։ Առաջինը՝ պատկանում է հռչակաւոր առողջաբան հանգ. Պ ե տ ե ն կ օ ֆ ֆ ե ր ի ն (Pettenkofer), որի կարծիքով խոլերի սաղմը անմիջապէս վարակիչ չէ, իսկ այդպիսին դառնում է այն ժամանակ՝ երբ նա ընկնում և ապրում է գետնի մէջ։ Բայց խոլերի սաղմի (зародышъ) զարգացումը կախում ունի գետնի բնութիւնից, մթնոլորդական պայմաններից, տաքութիւնից և խոնաւութիւնից։

Հռչակաւոր գիտնականի այդ տեսութիւնը կոչւում է «Տ ե ղ ա կ ա ն» (теорія локалистовъ)։

Ե ր կ ր ո ր դ տ ե ս ո ւ թ ի ւ ն ը պատկանում է հռչակաւոր Կոխին, որը գլխաւոր նշանակութիւնը տալիս է հիւանդից արտաքսուող կղկղանքի (изверженіе) մէջ վխտող վիբրիոններին, որոնք մտնելով ստամոքս-աղիքային խողովակը, եթէ կայ նախատրամադրութիւն, ուղղակի յարուցանում են խ ո լ ե ր ա յ։

Այդ տեսութիւնը կոչւում է կպչողական (теорія контагіонистовъ), որը ընդունուած է ներկայումս բժշկականութեան մէջ։

Ե ր ր ո ր դ տ ե ս ո ւ թ ի ւ ն ը պատկանում է Hüppe-ին, որի կարծիքով հիւանդից դուրս եկող խոլերի վիբրիոնը, որ սնուել է առանց օդի (анаэробно), ընկնելով օդի մէջ, լինում է հիւանդոտ և ոչնչանում է ստամոքսի նորմալ հիւթի մէջ։ Բայց երբ ստամոքսը հիւանդ է կատարրով, այն ժամանակ յիշեալ վիբրիոնը նպաստաւոր պայման է գտնում և յարուցանում խոլերայ։ Կան և ուրիշ տեսութիւններ, որոնք զուրկ են առանձին նշանակութիւնից։

## VI ՆԱԽԱՏՐԱՄԱԴՐՈՒԹԻՒՆ

Խոլերայով հիւանդանալու համար հարկաւոր է նախատրամադրութիւն. ամենքը չեն վարակւում. խոլերի վիբրիոնը՝ մտնելով աղիքների մէջ (նա գլխաւորապէս բարակ աղիքներում է զարգանում), կարող է ոչնչանալ կամ զարգանալ, բայց չյարուցանել հիւանդութիւն, թէև նրանց կղկղանքի մէջ գտնում են թունաւորիչ (вируленты) վիբրիոններ կամ յարուցանել թեթև, միջակ և ծանր խոլերայ։ Եւ այդ վերջի դէպքերը բացատրւում են նրանով, որ աղիքների էպիտելիաները, որոնք կազմում են մի տեսակ պաշտպանողական ծածկոց (защитит покровъ), փտաւում և բաժանւում են աղիքի պատերից և այդ պատճառաւ վիբրիոնի թոյնը-տօքսինը մտնում է կ ա զ մ ո ւ ա ծ ք ի մ է ջ։ Այն դէպքերի թիւը, երբ վարակումից յետոյ արտայայտւում է խոլերայ՝ ըստ Ռումպֆի կազմում է, երևի պակաս $50^{0}/_{0}$-ից։

Իսկ խոլերայով իսկական հիւանդացողներից վախճանւում է՝ միջին հաշւով 40—$60^{0}/_{0}$, գլխաւորապէս թուլացած և ծերացած անձինք։ Բայց թէ թեթև, թէ ծանր դէպքերը կարող են դառնալ պատճառ համաճարակի։

*Բացի դրանից ապացուցուած է, որ ըստ երևոյթին առողջ մարդիկ կարող են ունենալ իրանց աղիքներում խոլերի վիբրիոն-ներ. նոյնպէս ապացուցուած է, որ խոլերից առողջացածների կղկղանքում 48 օրից յետոյ լինում են կենսունակ բացիլներ։ Ահա թէ ինչպէս դժուար է լինում խոլերի սկզբնաւորութեան աղբիւրը ճշտօրէն որոշելու հարցը։ Նախատրամադրութեան հար-ցում մեծ նշանակութիւն է ստանում այն գործարանի առողջա-կան դրութիւնը, ուր զարգանում է խոլերան, այսինքն՝ ստամոքսաղիքային ... մարսողական գործարանների։*

## VII ՆԱԽԱԶԳՈՒՇԱՑՆՈՂԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐԸ ԽՈԼԵՐԱՅԻ ԴԷՄ

*1) Անհատական նախազգուշութիւններ։ Սրանք, ինչպէս բացատրուեց վերև, կայանում են հետևեալում. ա) հետևել, որ ստամոքսաղիքային մարսողական գործարանը չը խանգարուի. բ) չը գործածել խակ և փչացած պտուղներ, չը խմել կասկածելի ջուր, գործածել եփ տուած ջուր, սնունդը ստանալ չափաւոր, խուսափել արբեցո-ղութիւնից, չ'ենթարկուել ցրտահարութեան, մանաւանդ խոհանո-ցի ամանները մաքուր պահել, և այլն և այլն։*

*2) Ընդհանուր հասարակական և սոցիալական միջոցներ. ա) մատակարարել առողջարար ջուր և մաքուր ուտելեղէններ շու-կայում. բ) հսկել մաքրութեան վրայ քաղաքներում, գիւղերում, առանձին հսկողութիւն արտաքնոցների վրայ, որոնք չպիտի կա-ռուցուին խմելու ջրի շրջակայքում, որպէսզի բացիլները չանց-նեն ջրի մէջ, ինչպէս այդ պատահում է յաճախ ջրհորների և գետերի մօտ եղող արտաքնոցներից։*

*գ) Որովհետև խոլերան, ինչպէս և միւս տարափոխիկ հի-ւանդութիւնները, հարուածում է աղքատ դասակարգը, ուստի հար-կաւոր է մտածել նրա մասին, տալով առողջարար բնակարան, ջուր, սնունդ, բանալով ճաշարաններ, թէյարաններ և այլն։*

*դ) Հսկել, որ լուրջ ախտահանում լինի խոլերի դէպքերի ժամանակ թէ բնակարաններում, թէ շուկաներում և այլն։*

*ե) Հսկել, որ թէ խոլերայով հիւանդացողների, թէ խոլե-րայով վարակուած տեղերից եկողների կղկղանքը մանրադիտա-կան սիստեմատիկ քննութեան ենթարկուի որոշ ժամանակամի-ջոցում, մինչև որ բացիլները անյետահան նրա մէջ։*

*զ) Հիւանդներին անմիջապէս տեղաւորել առանձին հիւան-դանոցներում (*холерн. бараки*), ուր կան ամեն յարմարութիւն-ներ թէ բժշկելու և թէ ախտահանելու։ Իսկ եթէ հնարաւորու-թիւն կայ տանը մնալու, ձեռնարկել հարկաւոր միջոցների թէ հիւանդին առանձնացնելու և թէ նրա կղկղանքը և այն ամենը, որը շփւում է նորա հետ, ախտահանելու։*

*Եւրոպական ազգերը վաղուց իրանց ապահովեցրել են զանազան համաճարակների հարուածներից, օրինակ՝ խոլերի և ժանտախ-տի, առաջ բերելով Պոլսի և Ալէքսանդրիայի միջազգային խոր-հուրդների հաստատումը, և Կարմիր ծովի, Պարսից ծոցի հսկո-ղութեան և ախտահանական հաստատութիւնները։*

## VIII ՆԱԽԱԶԳՈՒՇԱՑՆՈՂԱԿԱՆ ՊԱՏՈՒԱՍՏԸ ԽՈԼԵՐԱՅԻ ԴԷՄ

*Այդ պատուաստումը սովորաբար անւում է երեք անգամ 5—6 օրուայ ընդմիջումներից յետոյ. նախապաշտպանութիւնը տևում է մէկ տարի։ Բժ.* Ferran-*ի,* Хавкинъ, Kolle-*ի,* Marata-*ի փորձերը ցոյց են տուել հետևեալը.*

*Ըստ Մոցատի փորձերի 80,000 անձանց վրայ, հիւանդացել են 0.06%, վախճանուել 0,002%, մինչ չպատուաստուածներից հի-ւանդացնել են՝ 0,13%, վախճանուել՝ 0,1%։ Այդ պատուաստումը գործադրւում է գլխաւորապէս բժիշկների, ծառաների, ֆելդշերների և գթութեան քոյրերի վրայ։ Այդպիսի պատուաստում տեղի ու-նեցաւ առաջներում մեզ մօտ և Թիֆլիսում, երբ երևաց խոլերայ, որը շուտով անյետացաւ շնորհիւ սանիտարական լուրջ միջոց-ների։*

*Բժ. Բ. Աղասարեան*

*(Շարունակելի)*

# Պատմական

## ՇՈՒՇԱՆ ԻՇԽԱՆՈՒՀԻ

*«Հարի (մինչև) Շուշան դարդրուի,*
*«Պատարագ կ'արձկուի...*
*(Ժող. առած)*

*«Համբաւաբեր»-ի № 37-ում լոյս տեսած Շ ո ւ շ ա ն Ի շ-խ ա ն ո ւ հ ի յօդուածը վերյուշել տուեց ինձ մի ազգային ա-ռած՝ որ այս տողերի վերնագիրն է կազմում։*

*Համաձայն ժողովրդական աւանդութեան՝ որ վերոգրեալ առածի մեկնութիւնը կամ բացատրութիւնն է և որ գալիս է ստուգելու իշխանուհու թանկագին մարմնի գիւտը, Բագրատու-նեաց մայրաքաղաքի փառք ու պարծանքներից մինն էլ «Տիկ-նանց տիկին Շուշանն» էր, որ թէև եկեղեցասէր՝ բայց «գրգեալ և զգուեալ ի գահաւորակս և ի բաստեռունս» աւելի քան զարդա-րասէր կամ պչրասէր էր։*

*Երբ հայոց սուրբ Աղօթարանը բացւում էր աշխարհի վրայ— ասում է ժողովուրդը—տիկին Շուշանը նաժիշտներով շրջապա-տուած հանդիսաւորապէս եկեղեցի երթալու համար սկսում էր հագնել մ ա ր գ ա ր տ ա շ ա ր թ ա փ թ ա շապիկը, թանկա-գին պատմուճանը, եղրածիրանին[1]), միջնածիրանին ու երեսլի լա-կոնացին։ Պէտք էր նաև պատշաճաւոր ձևով գլխին յարմարցնէր ցանցակերպ ծամկալը, մահեկները, դնէր խոյրը, կապել տար իշխանական ապարօշը, ոտքերն անցկացնէր ոսկի մեհեւանդների փառքը [2]), ձեռքերին դնէր ապարանջանները, մատներին՝ մատա-նիները, ականջներից կախէր՝ գնդերը, աւելացնէր նաև ոսկի զարդաշղթաները. գօտիկում դետեղէր անուշահոտ ոգիների (духи) տուփերը. կողքից կախէր հմայեակները և վերջապէս գլուխը ծած-կէր մի շղաշատեռով, որի տակից, ինչպէս Աստղիկեան մէգի մէ-ջից, շողշողում էր իշխանուհին [3])։ Եւ մինչ նաժիշտների ու օրի-որդների հետ ուղում էր թափորով եկեղեցի երթալ, ահա պատ-գամաբերը գալիս էր լուր տալու որ պ ա տ ա ր ա գ ն ա ր ձ ա-կ ո ւ ե լ է։*

*Կրկնւում էին ամեն տօն ու կիրակի օրերում «Տիկնանց տի-կինի» զարդարանքի և պճնելակերպի արարողութիւնները. պա-տարագը արձակւում էր և նա զրկւում էր եկեղեցի գնալուց, ո-*

---

*[1]) Եղրածիրանի—ծիրանեգոյն քղանցքներով զգեստ։ Միջնածիրանի—զգեստ, որի մէջի թելերը ծիրանի գոյն ունէին։ Լակոնացին—թափանցիկ կտաւ է։ Այս տեսակ հագուստները հագնում էին իշխանուհիները հին ժամանակներում։*
*Մանոթ. Խմբ.*

*[2]) Մինչև այսօր էլ Մշոյ աշխարհի հայ և քիւրդ կիներն իրենց ոտքե-րին կապում են* **սև ուլունքներ**, *որոնք կոչւում են* **սիրան հյունըներ**։ *Տակա-ւին կարելի է տեսնել հատ ու կենտ կիներ, որոնք կրում են* **ոսկի մեհեւանդ-ներ**, *որ ժողովրդական բարբառով կոչւում են* **խալխալ** *և շինւում են պղնձից, արոյրից կամ հասարակ երկաթից։*

*[3]) Զարդարանքի այս մանրամասնութիւնը նկարագրուած է հայոց եկե-ղեցու «Մայր Մաշտոց» ում, փոխադրուած՝ Եսայեայ մարգարէից (Գ. 16), որ նկարագրում է ժամանակակից հրէայ աղջիկների պչրանքը։ Արաբներն՝ իբրև սեմիտ ժողովուրդ, շատ բան առած են հրէաներից, իսկ Հայերը Բագրատու-նեաց շրջանում նոյնպէս շատ սովորութիւններ ընդօրինակած պիտի լինեն արաբներից։ Օր. Դագիկ Բ-ի արձանը ցոյց է տալիս, որ հայոց թագաւորները զգեստաւորւում էին խալիֆաների նման, բնական է որ կանայք եւ հետևէին տիրող ազգի սովորութեանց տեղին ու գիրքին համաձայն։ Ս. Մ.*

*րովհետև իշխանուհու պալատը, ասում է ժողովուրդը, բաւական հեռու էր եկեղեցուց։*

*Ուրիշ ելք չէր մնում, եթէ ոչ՝ ունենալ սեպհական եկեղեցի՝ նոյնիսկ պալատին կից։ Շատ չանցած մայրաքաղաք Անին զարդարւում էր մի փառաւոր եկեղեցիով ևս, և դա Տ ի կ ն ա ն ց տ ի կ ի ն Շուշանի եկեղեցին էր, ուր ի հարկէ պատարագը չէր կարող արձակուել մինչև որ Տիկինը չզարդարուէր և ներկայ չը լինէր։*

*Անցել են դարեր ու տարիներ, բայց հայ ժողովուրդը դեռ չէ մոռացել իր զարդասէր Տիկնոջ պճնելակերպը և դրա յիշատակը անմահացրել է «Մինչև Շուշան զարդարուի՝ պատարագը կարձակուի» առածով [1])։*

*Նուիրում եմ այս տողերը Տիկին Շուշանի թանկագին աճիւնի գիւտի յիշատակին։*

*Սահակ Մովսէսեան*

---

# ԹԱՏՐՈՆ

## ՀԱՅ ԹԱՏՐՈՆ

*Հայոց դրամատիքական ընկերութեան խորհուրդը վերջնականապէս վճռել է յառաջիկայ թատերաշրջանը բաց անել հոկտեմբերի 3-ին, որի համար պիտի ներկայացուի «Պէպօ» կոմեդիան ի յիշատակ Սունդուկեանի և Զմշկեանի։ Սրանց մասին ներկայացումից առաջ հրաւիրուած է բանախօսելու մեր ականաւոր գրող պ. Շիրվանզադէն։ Ինչպէս «Պէպօ»ին, նմանապէս Շանթի նոր թատերգ «Կայսր»ի և ուրիշ թատերգների համար պատրաստւում են նոր բեմապատկերներ և հագուստներ։*

*«Պէպօ»ի ներկայացման մասնակցելու հրաւիրուած են՝ տ. Վարդուհի (Շուշան), պ. պ. Գ. Տէր-Դաւթեան (Գիքօ) և Յ. Տէր-Գրիգորեան (Արութին)։ Որոշուած է Գեղարուեստական յաջողութիւնն ապահովելու համար ոչ մի ջանք չը խնայել և առանձին ուշադրութիւն դարձնել բեմադրութեան ճշգրիտ և գեղարուեստական լինելուն։*

*Խմբի ընդհանուր ռեժիսոր պ. Սևումեանից զատ նաև հրաւիրուած են բարեհաճօրէն մի քանի ներկայացումներին ուղղութիւն տալու համար պ. պ. Քափանակեան և Յ. Զմշկեան։ Մի քանի ֆրանսերէնից նոր թարգմանուած թատերգների բեմադրութեան համար օժանդակելու է խմբի դերասան պ. Վ. Փափազեան։*

*«Պէպօ»ի ներկայացման զուտ արդիւնքի մի մասը յատկացուելու է Զմշկեանի յուշարձանի ֆոնդի օգտին։*

*Երկրորդ ինքնուրոյն թատերգը լինելու է Շիրվանզադէի «Նամուս»ը, որի մէջ առաջին անգամ պիտի հանդէս գան տ. Սիրանոյշ և պ. Վ. Փափազեան (Սէյրան)։ «Նամուս»ի երրորդ արարուածը (հարսանիք) պիտի ներկայացուի երկու պատկերով։*

*Նկատի ունենալով այս տարուայ խմբի կազմը, որ բաղկացած է երիտասարդ և պատրաստուած ուժերից՝ իրաւունք ունենք սպասելու, որ խումբը կ'արդարացնի իր վրայ դրուած յոյսերը։*

---

## ՀԱՅ ԴԵՐԱՍԱՆԱԿԱՆ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆ

*Հայ դրամատիքական ընկերութիւնից զատ կազմուել է նաև Հայ դերասանական ընկերակցութիւն անունով մի միութիւն, որի անդամներն են՝ տ. Մայսուրեան, պ. պ. Աբէլեան, Զարիֆեան, Ալիխանեան և ուրիշներ, բոլորն էլ յայտնի և կարող ուժերից։*

*Դերասանական ընկերակցութեան ներկայացումները պիտի կայանան հինգշաբթի օրերը։ Առաջիկայ հոկտեմբերի 6-ին կը ներկայացուի Լ. Շանթի «Հին Աստուածներ» թատերգը. այնուհետև պիտի ներկայացուին յաջորդաբար, մեծ մասամբ ինքնուրոյն թատերգութիւնները։*

*Ներկայ թատերական տարեշրջանը մեծ յոյսեր է ներշնչում. հայ թատրոնի առաջադիմութիւնը սրանով որոշ դարձ է ստանում։ Պէտք է վերջապէս բարձրանալ արևելեան գռեհկութեան ստորճաններից, մաքրել ժողովրդի ճաշակը, ազնուացնել և կրթել նրա զգացումները։*

*Միւս կողմից հայ հասարակութիւնը պէտք է գնահատէ մեր լաւագոյն արուեստագէտների ջանքերը, գնահատէ թէ բարոյապէս և թէ նիւթապէս։ «Արշին մալ ալանն»-երի կաշկանդիչ և գռեհկացնող ազդեցութիւններից ազատուելու և մաքրուելու համար՝ հայկական թատրոնը մեծ և կարևոր դեր ունի կատարելիք։*

*Արտիստ*

[1]) *Այս և հետևեալ «Հարի աղն եկաւ, մատաղ գնաց» կամ «Հարի առուն գայ, գորտան աչքեր դուրս կիգայ» առածները գործ են ածում այն պարագային, երբ գործը ձգձգում են, յետաձգում կամ ժողովրդական լեզուով՝ դէմդէմում, դնդնացնում։ Ս. Մ.*

---

## ՆՈՐ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

*Ստացանք՝ Գէրբէրթ Ադամս Գիբօնսի* «Послѣднія избіенія въ Арменіи» *ռուսերէնի թարգմանուած։*

*Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ*

*Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ*

Կ. Հ. Բ. Ընկ. և Կ. Կոմիտէի նախագահ Ս. Յարութիւնեանցի անունով՝ Ամերիկա գաղթած մշեցի Խոսրով Կոնչոյեան 200 ռ. է ուղարկել, մշեցի Ալէքսան Մովսէսեանին յանձնելու համար։ Ալէքսան Մովսէսեանի հասցէն իմացողները թող բարեհաճեն յայտնել Հ. Բ. Ընկերութեան գրասենեակում։

---

Կ. Հ. Բ. Ը-թեան փախստականների համար հիմնուած

**կազմատանը, տողագծարանի և ծրարնոցի**

արհեստանոցում ընդունւում են ամեն տեսակ կազմարարական պատուէրներ։ Պատրաստւում են նաև զանազան մեծութեան ծրարներ, աշակերտական տետրեր և գլխանական գրքեր։
Դիմել Գանովսկայա փող. տ. Մանթաշեանի։

---

ՔԱՄԱԼԵԱՆՑ Ս. ԴՊՐԻ

Կազմած և Վեհափառից Թոյլատրած

## ԿՐՕՆԻ ԴԱՍԱԳՐՔԵՐԸ

Ա. տարի. Առակներ, Յիսուսի կեանքից պատմուածներ. գինը 15 կ.
Բ. տարուայ Նիւթի մշակութիւնը, ձեռնարկ դասատուների համար . . . . . . . 40 »
Գ. տ. Նահապետների կեանք . . . . . . 20 »
Դ. տ. Իսրայէլի առաջնորդներ, Թագաւորներ . . 35 »
Ե. տ. Մարգարէներ . . . . . . 40 »
Զ. տ. Յիսուսի կեանք . . . . . . 50 »
Դիմել Թիֆլիսի գրավաճառներին կամ հեղինակին՝ Միքայէլեան փողոց № 82. զեղչ 25%. ճամբածախսը գնողի վրայ։

---

**Продолжается подписка на**

Первый и единственный по типу ежемѣсячный иллюстрированный журналъ

# „АРМЯНЕ и ВОЙНА"

освященный вопросамъ армянской жизни въ связи съ войной.
ЦѢЛЬ ЖУРНАЛА: широкое освѣдомленіе общества съ армянской дѣйствительностью.

Въ журналѣ принимаютъ участіе извѣстные русскіе и армянскіе литераторы и журналисты.

ПОДПИСНАЯ ЦѢНА:

| | |
|---|---|
| Годъ . . . 3 р. — к. | За 3 мѣсяца . . . . 75 к. |
| ½ годъ . . . 1 р. 50 к. | Отдѣльный номеръ . . 25 к. |

Подписную плату можно присылать марками.
Пробный номеръ высылается за 3 десятикопѣечныя марки.

Адресъ конторы и редакціи: Одесса, Польская ул. № 16.

3—3

---

Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

Հրատարակութեամբ լոյս տեսաւ և վաճառւում է

**ԱՐԻՍՏԱԿԷՍ ՓԱՐԻՄՈՒՋԵԱՆԻ**

## „ԹԷ ԻՆՉՊԷՍ ՊԷՏՔ Է ԳՐԱԴԱՐԱՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆՆԵՐ ՀԻՄՆԵԼ ԵՒ ԿԱՌԱՎԱՐԵԼ"

ԳՐՔՈՅԿԸ

ԳԻՆԸ 10 ԿՈՊ.

Դիմել Կ. Հ. Բ. Ը թեան գրադարանին՝ Абасъ-Абадская 7. կամ թէ «Գիր» գրախանութին, Вельяминовская улица.

3—3

---

**Продолжается подписка на 1916 годъ**

на еженедѣльный общественно-политическій и литературный журналъ посвященный вопросамъ армянской жизни.

# „Армянскій Вѣстникъ"

(первый годъ)

издаваемый въ Москвѣ Ив. Т. Амировымъ при участіи видныхъ русскихъ и армянскихъ литераторовъ и общественныхъ дѣятелей.

Подписная цѣна

Въ Россіи: на 1 годъ 6 руб., на 6 мѣс. 4 руб. на 3 мѣс. 2 руб. 50 коп., на 1 мѣс. 1 р. 25 коп. За границу вдвое. Цѣна отдѣльнаго номера 20 коп.

Журналъ будетъ выходитъ по воскресеньямъ. Адресъ редакціи и конторы журнала „Армянскій Вѣстникъ": Москва, Остоженка, 2-й Ильинскій пер., д. 3. кв. 2.

Редакторъ издатель

Иванъ Томасовичъ Амировъ

---

## ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Հարկաւոր են Ուսուցիչներ և Ուսուցչուհիներ. ցանկացողները պէտք է դիմեն Հ. Կ. Կոմիտէին, Тифлисъ, Абас-Абадская пл. № 7

3—3

Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной ценз.

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 40

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

*Ալաշկերտի որբանոցի որբերի ցուցակը*

1916 թ. յունիսի 3-ին.

| № № | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Տարիքը | Ո՞ր գիւղից | Ո՞ր շրջանից |
|---|---|---|---|---|
| 1 | Աւետիսեան Գէորգ | 12 | Դրմերտ | Մուշ |
| 2 | Աստուածատրեան Հայկ | 10 | Կողակ | Բուլանուխ |
| 3 | Աւետիսեան Մուշեղ | 10 | Ջաւուրմա | Մուշ |
| 4 | Առաքելեան Մկրտիչ | 4 | Էլպիս | Խնուս |
| 5 | Առաքելեան Գրքօ | 5 | " | " |
| 6 | Աստուածատրեան Սարգիս | 12 | Յունան | Մուշ |
| 7 | Աբրոյեան Քեասօ | 6 | Համզաշէխ | Խնուս |
| 8 | Արմենակեան Ռուբէն | 3 | Տութաղ | — |
| 9 | Աւէեան Նանախաս | 9 | Քաղքիկ | Խնուս |
| 10 | Արէեան Խաչօ | 10 | Խլներ | Մուշ |
| 11 | Արսէնեան Սամսոն | 9 | — | Խնուս |
| 12 | Աւոյեան Սաքիկ | 7 | Ջաւուրմա | " |
| 13 | Աբրահամեան Խաչատուր | 17 | — | Մուշ |
| 14 | Արշակեան Ազնիւ | 4 | Գիւմգիւմ | — |
| 15 | Ամիրխանեան Արամ | 3 | Աւզուտ | Մուշ |
| 16 | Ասոյեան Լեւոն | 10 | Երիշտեր | " |
| 17 | Ամիրխանեան Ազատ | 4 | Աւզուտ | » |
| 18 | Արսէնեան Զոհրաբ | 5 | — | Խնուս |
| 19 | Ակոյեան Եղիս | 13 | Ղարաքոփրիկ | " |
| 20 | Աստուրեան Փարիշա | 12 | Կողակ | Բուլանուխ |
| 21 | Առաքելեան Իվան | 10 | Ղարաքոփրիկ | Խնուս |
| 22 | Արփոյեան Ազատ | 7 | Խասգիւղ | Մուշ |
| 23 | Աւեան Սօսէ | 9 | Բոտաքեանդ | " |
| 24 | Ամրոյեան Անդրանիկ | 10 | Ղարաքոփրիկ | Խնուս |
| 25 | Աւետիսեան Սաթէ | 12 | Ջաւուրմա | » |
| 26 | Աւետիսեան Մխիթար | 12 | Ձերօքլօ | Վան |
| 27 | Ակոյեան Խաչօ | 10 | Շմլակ | Մուշ |
| 28 | Անդրոյեան Ալմաստ | 10 | Բոստաքեանդ | " |
| 29 | Աւագեան Խաթօ | 10 | Տուման | » |
| 30 | Աբրոյեան Պայծառ | 10 | Ղարաքոփրիկ | Խնուս |
| 31 | Առաքելեան Խանում | 10 | Քաղքիկ | " |
| 32 | Ասոյեան Ազատ | 4 | Բոստաքեանդ | Մուշ |
| 33 | Արթենեան Հրեղէն | 8 | Քրդագոմ | " |
| 34 | Արսէնեան Սիրան | 12 | Խնուս | — |
| 35 | Արթենեան Լեւոն | 14 | Արդերդ | Մուշ |
| 36 | Արշակեան Վահան | 4 | Տուման | Խնուս |
| 37 | Ալոյեան Ազնիւ | 4 | Թիլ | Մուշ |
| 38 | Աւոյեան Նանուն | 11 | Բասկա | Վարդօ |
| 39 | Արութեան Հայկօ | 6 | Տուման | Խնուս |
| 40 | Արսէնեան Փուրօ | 4 | Խնուս | — |
| 41 | Աւէեան Մարգարիտ | 10 | Քաղքիկ | Խնուս |
| 42 | Աբրոյեան Վարդիկ | 6 | Աւզուտ | Մուշ |
| 43 | Ամիրխանեան Աբրշուր | 8 | " | " |
| 44 | Արմենակեան | 4 | Զորկնոց | " |
| 45 | Աբրոյեան Սարգիս | 3 | Ղարաքոփրիկ | Խնուս |
| 46 | Ազատեան Կուլէ | 10 | Սալուա | " |
| 47 | Անդրէասեան Վարդօ | 9 | Իրիգակ | Մուշ |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 48 | Բրսոյեան Ռուբէն | 10 | Դումլըպըրա | Մուշ |
| 49 | Բարսեղեան Ղազար | 10 | Արդղօն | " |
| 50 | Բաղէեան Ագէ | 9 | Խալչավիշ | Խնուս |
| 51 | Բաղէեան Ասմար | 6 | " | " |
| 52 | Բաղդասարեան Արեգնազ | 7 | Արտօնք | Մուշ |
| 53 | Բալոյեան Մաքէ | 3 | Քօլօսիկ | " |
| 54 | Բաղդասարեան Արմենակ | 14 | Խնուս | — |
| 55 | Գրիգորեան Յովսէփ | 12 | Խոշկելտի | Բուլանուխ |
| 56 | Գրիգորեան Արտեմ | 13 | Բոստաքեանդ | " |
| 57 | Գրիգորեան Վարդանոյշ | 6 | Արտօնք | Մուշ |
| 58 | Գէորգեան Արտաս | 11 | Ղարաքօփրիկ | Խնուս |
| 59 | Գրիգորեան Արիստակէս | 14 | Խօշկելտի | Բուլանուխ |
| 60 | Գրիգորեան Թորգոմ | 4 | Դրմերտ | Մուշ |
| 61 | Գրիգորեան Մկրտիչ | 10 | Ձորկնոց | " |
| 62 | Գէորգեան Հայրիկ | 12 | Քաղքիկ | Խնուս |
| 63 | Գէորգեան Եղիա | ? | — | — |
| 64 | Գէորգեան Արշակ | 8 | Խեարթանք | Խլաթ |
| 65 | Գէորգեան Մարիամ | 8 | — | Խնուս |
| 66 | Գրիգորեան Մովսէս | 9 | Վարդօ | — |
| 67 | Գասպարեան Զարդար | 10 | Մաջէթլու | Խնուս |
| 68 | Գեղամեան Շիլիտ | 10 | Ղարաչօպան | " |
| 69 | Գէորգեան Ազրութ | 10 | Բոստաքեանդ | Մուշ |
| 70 | Գրիգորեան Մեսրոպ | 10 | Յունան | " |
| 71 | Գրիգորեան Աւետուր | 10 | Մուշ | » |
| 72 | Գրիգորեան Նուարդ | 11 | Ղարաքօփրիկ | Խնուս |
| 73 | Գրիգորեան Անգին | 11 | Տօտան | Վարդօ |
| 74 | Գասպարեան Սարգիս | 12 | Յունան | Մուշ |
| 75 | Գասպարեան Արմենակ | 12 | Բուրնազ | Խնուս |
| 76 | Դանիէլեան Գարեգին | 4 | Քրդագոմ | Մուշ |
| 77 | Երանոսեան Կուլի | 13 | Վարդենիս | » |
| 78 | Երանոսեան Քիշմիշ | 14 | — | Խնուս |
| 79 | Երանոսեան Մարգա | 7 | — | » |
| 80 | Ելոյեան Երուանդ | 12 | Տատուան | Բիթլիս |
| 81 | Երէցեան Յովհաննէս | 10 | Երիշտեր | Մուշ |
| 82 | Երէցեան Արու | 7 | » | » |
| 83 | Երանոսեան Համբարձում | 10 | Խասգիւղ | » |
| 84 | Երէցեան Բենօ | 4 | Քրդագոմ | » |
| 85 | Եղոյեան Նատօ | 8 | Հարամիկ | Խնուս |
| 86 | Զաքարեան Վերքօ | 5 | Ծղաղ | Մուշ |
| 87 | Զաքարեան Սեդօ | 6 | — | — |
| 88 | Էրոյեան Անդրանիկ | 11 | Մկրագոմ | Մուշ |
| 89 | Թորգոմեան Կիրակոս | 6 | Արտօնք | » |
| 90 | Թաթոսեան Նանակիւլ | 10 | Արզրում | — |
| 91 | Թաթոյեան Վահան | 11 | Խասգիւղ | Մուշ |
| 92 | Թաթոսեան Իփրօ | 5 | » | " |
| 93 | Թաթոսեան Կարմեն | 4 | » | " |
| 94 | Թադէոսեան Սիրան | 9 | Արօս | Խնուս |
| 95 | Իփրոյեան Ազնիւ | 10 | Սօրտար | Մուշ |
| 96 | Իսրոյեան Սրտուր | 10 | Թափալի | Խլաթ |
| 97 | Իսրայէլեան Կուլէ | 5 | Ազգամելիք | Խնուս |
| 98 | Խաչոյեան Աստուածատուր | 4 | Խլաթ | Բիթլիս |
| 99 | Խաժոյեան Անտօ | 11 | Խասգիւղ | Մուշ |
| 100 | Խաժոյեան Մքրօ | 9 | » | » |
| 101 | Խիլոյեան Ազնիւ | 14 | Խնուս | — |
| 102 | Խաչոյեան Վարդանոյշ | 7 | Ղարաչօպան | Խնուս |
| 103 | Խկոյեան Հրանտ | 8 | Խասգիւղ | Մուշ |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 104 | Կարոյեան Հրանտ | 8 | Աղջամելիք | Խնուս |
| 105 | Կարապետեան Յակոբ | 17 | Երիշտեր | Մուշ |
| 106 | Կարոյեան Արմօ | 10 | Բոստաքեանդ | » |
| 107 | Կոլէեան Ոսկան | 10 | Թիլ | » |
| 108 | Կարապետեան Քերովբ | 11 | Խասգիւղ | » |
| 109 | Կվոյեան Արմօ | 8 | Բոստաքեանդ | » |
| 110 | Կարոյեան Ալմաստ | 6 | Խասգիւղ | » |
| 111 | Կարպոյեան Բայազէ | 12 | Տապուէն | Խլաթ |
| 112 | Հլղաթեան Սիսօ | 12 | Անհրու | Մուշ |
| 113 | Համբարձումեան Վարդանոյշ | 11 | — | Խնուս |
| 114 | Հրոյեան Անտօ | 12 | Բոստաքեանդ | Մուշ |
| 115 | Համր աղջիկ | 6 | — | — |
| 116 | Համբարձումեան Փարես | | | |
| 117 | Համբարձումեան Աղրութ | 12 | Սօրտար | Մուշ |
| 118 | Հապարեան Մարգարիտ | 13 | Խաշխալտաղ | » |
| 119 | Համբարձումեան Անուշ | 4 | Խնուս | — |
| 120 | Ղուկասեան Միհրան | 10 | Բոստաքեանդ | Մուշ |
| 121 | Ղազարեան Յարութիւն | 10 | Երիշտեր | » |
| 122 | Ղազարեան Ռուբէն | 12 | » | » |
| 123 | Ղօտեանեան Ազիզ | 10 | Տատվան | — |
| 124 | Ղազարեան Հմայեակ | 8 | Կիւնտեմիր | Վարդօ |
| 125 | Ղուրշուտեան Արուս | 7 | Տուման | Խնուս |
| 126 | Մխիթարեան Սողոմոն | 8 | Էլպիս | » |
| 127 | Միսաքեան Անդրանիկ | 6 | Ղայրաշի | — |
| 128 | Մկրտչեան Պետրոս | 16 | Խասգիւղ | Մուշ |
| 129 | Մարգարեան Միհրան | 4 | Արգաւանք | » |
| 130 | Մկրոյեան Սգատ | 4 | Տուման | — |
| 131 | Մանուկեան Մուշեղ | 10 | Խարախլու | Բլանուխ |
| 132 | Մոսոյեան Ազնիւ | 6 | Բոստաքեանդ | Մուշ |
| 133 | Մոսոյեան Քինօ | 8 | Իրիզակ | » |
| 134 | Մուրադեան Սօսէ | 10 | Դրմերտ | » |
| 135 | Մխիթարեան Յովհաննէս | 14 | Երիշտեր | » |
| 136 | Մուշեղեան Ռուբէն | 11 | — | Վարդօ |
| 137 | Մուշեղեան Անդրանիկ | (?) | — | — |
| 138 | Մխոյեան Գէորգ | 7 | Վարդխաղ | Մուշ |
| 139 | Մկրտչեան Քերովբ | 9 | Խասգիւղ | » |
| 140 | Մեսրովբեան Յաբեթ | 5 | Խարսա | — |
| 141 | Մարգարեան Յակոբ | 11 | Վարդովա | — |
| 142 | Մխիթարեան Տիգրան | 10 | Բոստաքեանդ | Խնուս |
| 143 | Մարգարեան Սինա | 6 | Աւղաղբիւր | Մուշ |
| 144 | Մարգարեան Արամ | 10 | Երիշտեր | » |
| 145 | Մկրտչեան Առաքել | 11 | Քոզեր | — |
| 146 | Մնոյեան Սիրան | 4 | Քաղքիկ | Խնուս |
| 147 | Մուրադեան Մուշեղ | 5 | Ալիքլրուն | Մուշ |
| 148 | Մարտիրոսեան Շաքլի | 10 | Օղնչոր | Բուլանուխ |
| 149 | Մարտիրոսեան Ֆերխաշ | 11 | » | » |
| 150 | Մարտիրոսեան Խօտեսա | 8 | » | » |
| 151 | Մուշեղեան Ջլֆէ | 8 | — | — |
| 152 | Մելիքեան Գէորգ | 10 | Խասգիւղ | Մուշ |
| 153 | Մուշեղեան Յակոբ | 10 | Բոստաքեանդ | » |
| 154 | Մուրատեան Խուրուտ | 9 | Ամիրան | — |
| 155 | Մարտիրոսեան Յովհաննէս | 11 | Երիշտեր | Մուշ |
| 156 | Մարգարեան Սղաւնի | 8 | Աւզախ | Բիթլիս |
| 157 | Մանուկեան Բիզա | 18 | — | Բուլանուխ |
| 158 | Մխիթարեան Երուանդ | 10 | Քաղքիկ | — |
| 159 | Մանուկեան Հեղինէ | 10 | Հարամիկ | Խնուս |
| 160 | Միսաքեան Աստուր | 8 | Խնուս | » |
| 161 | Միսաքեան Անդրանիկ | 4 | » | » |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 162 | Մկրոյեան Գուլէ | (?) | — | — |
| 163 | Մելիքսեդեկեան Սարաֆ | 10 | Կողակ | Խնուս |
| 164 | Մակարեան Ազօ | 10 | Յունեան | Մուշ |
| 165 | Մուշեղեան Աղաւնի | 10 | Ջաւուրմա | Խնուս |
| 166 | Մաթոսեան Ռուբէն | 8 | Ծրգէտ | Մուշ |
| 167 | Մաթոսեան Գրիգոր | 6 | » | » |
| 168 | Մարտոյեան Վարդիշահ | 6 | Քրդագոմ | » |
| 169 | Մկրտչեան Հրեղէն | 8 | Գոմեր | » |
| 170 | Միսաքեան Կուլէ | 9 | Մարուֆ | Խնուս |
| 171 | Մոսոյեան Մարգարիտ | 4 | Աւզաղբիւր | Մուշ |
| 172 | Մոսոյեան Մանուկ | 5 | Մուշախշէն | » |
| 173 | Մինասեան Քիշօ | 5 | Արտոնք | " |
| 174 | Մոսոյեան Իսրօ | 7 | Աւզաղբիւր | » |
| 175 | Մուրադեան Անուշ | 11 | Կիւնտեմիր | Վարդօ |
| 176 | Մկրտչեան Մարթա | 6 | Կելիէկուզան | Սասուն |
| 177 | Մուրադեան Հայաստան | 8 | Դրմերտ | Մուշ |
| 178 | Մուշեղեան Վարդէ | 6 | Բոստաքեանդ | Խնուս |
| 179 | Մարգարեան Մարէ | 7 | Կիւնտեմիր | Վարդօ |
| 180 | Միսաքեան Ֆըլըք | 5 | Մարուֆ | Խնուս |
| 181 | Մարկոսեան Ջաւահիր | 14 | Բոստաքեանդ | Մուշ |
| 182 | Մուշոյեան Քերսօ | 5 | Փրկաշէն | Բուլանուխ |
| 183 | Յակոբեան Մխիթար | 10 | Ագրակ | Խնուս |
| 184 | Յակոբեան Գարեգին | 10 | Շարան | » |
| 185 | Յարութիւնեան Մկրտիչ | 11 | Խմներ | Մուշ |
| 186 | Յովսէփեան Ազատ | 6 | Երիշտեր | » |
| 187 | Յակոբեան Մելիք | 3 | Քօլօսիկ | » |
| 188 | Յովսէփեան Յովհաննէս | 12 | Թէմրան | Քղի |
| 189 | Յովսէփեան Անդրանիկ | 10 | Մուշ | — |
| 190 | Յակոբեան Սերովբ | 10 | Խասգիւղ | Մուշ |
| 191 | Յովսէփեան Արուս | 4 | Տօսան | Վարդօ |
| 192 | Յովսէփեան Սղաւնի | 13 | Խնուս | — |
| 193 | Յովսէփեան Անդրանիկ | 10 | » | — |
| 194 | Յովսէփեան Հրանտ | 7 | » | — |
| 195 | Նատոյեան Զաքար | 12 | Խաչաղլու | Կոպա |
| 196 | Նազարեան Մխիթար | 10 | Վարդով | — |
| 197 | Նազարեան | 6 | Խալգավխ | Խնուս |
| 198 | Ներսէսեան Միհրան | 11 | Կիւնտեմիր | Վարդօ |
| 199 | Նազարեան Սառա | 10 | Օղնուտ | Մուշ |
| 200 | Նազարեան Անխալատ | 10 | Ջաւուրմա | Խնուս |
| 201 | Շքուրեան Նուարդ | 10 | Կիւնտեմիր | Վարդօ |
| 202 | Ջաչանեան Ասօ | 10 | Վարդօ | — |
| 203 | Պօղէեան Արամ | 8 | Կազզվան | — |
| 204 | Պարտիզպանեան Հայկ | 12 | Թէմրան | Քղի |
| 205 | Պօղոսեան Ալէքսան | 10 | Խասգիւղ | Մուշ |
| 206 | Պօտոյեան Անդրանիկ | 5 | Բոստաքեանդ | » |
| 207 | Պօղոսեան Տօնօ | 10 | Երիշտեր | » |
| 208 | Պետրոսեան Բերսար | 12 | Ղարաքոփրիկ | Խնուս |
| 209 | Պօղոսեան Սիմէօն | 11 | Արտոնք | Մուշ |
| 210 | Պետրոսեան Մեմզար | 11 | Խասգիւղ | » |
| 211 | Պաղտասարեան Հրեղէն | 12 | Արտոնք | » |
| 212 | Պաղտասարեան Խօսրով | 5 | » | » |
| 213 | Պետրոսեան Գրիգոր | 13 | Թիլ | » |
| 214 | Պետրոսեան Արշալոյս | 10 | Ղարաքոփրիկ | Խնուս |
| 215 | Պուլոյեան Զապէլ | 10 | Երիշտեր | Մուշ |
| 216 | Պաղդասարեան Զաքար | 12 | Խնուս | — |
| 217 | Պետրոսեան Սարգիս | (?) | — | — |
| 218 | Պետրոսեան Ռեհան | 8 | Իրիգակ | Մուշ |